## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян Угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


Բովանդակություն

# Содержание







## ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ

# ԹԵԶԻՍՆԵՐԸ

1970 թվականի ապրիլի 22-ին լրանում է Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի հեղափոխական ուսմունքի հանճարեղ շարունակող, Սովետական Միության կոմունիստական կուսակցության ստեղծող, սոցիալական մեծագույն հեղափոխության ղեկավար և աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր, միջազգային բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Ուլյանովի՝ Լենինի ծննդյան հարյուր տարին:

Լենինի անվան ու գործունեության հետ է կապված մարդկության կյանքի մի ամբողջ հեղափոխական դարաշրջան: Լենինը տվեց պատմական զարգացման ընթացքով առաջադրված ամենահրատապ հարցերի պատասխանները, համակողմանիորեն զարգացրեց սոցիալիստական հեղափոխության և
կոմունիստական հասարակարգի կառուցման տեսությունը: Ռուսաստանի,
ամբողջ միջազգային հեղափոխական շարժումը վինեց գիտականորեն հիմ-
նավորված ստրատեգիայով ու տակտիկայով, գլխավորեց բանվոր դասակար-
գի պայքարը սոցիալիզմի իդեալների կենսագործման համար: Սոցիալիզմը,
որը Մարքսը և Էնգելսը ուտոպիայից վերածեցին գիտության և որը Լենինը
հարստացրեց նոր հետևություններով ու հայտնագործություններով, մարմ-
նավորվեց համաշխարհային պատմական մասշտաբներ ընդգրկող սոցիալա-
կան պրակտիկայի մեջ, դարձավ մեր ժամանակի հիմնական հեղափոխական
ուժը:

Հեղափոխական գործունեության հենց սկզբից Լենինը հաստատ կանգ-
նեց մարքսիզմի դիրքերի վրա, յուրացրեց նրա հեղափոխական-քննադատա-
կան ոգին, ստեղծագործական և գործունյա բնույթը, պրոլետարական ինտեր-
նացիոնալիզմը: Իր ամբողջ կյանքը նա նվիրեց բանվոր դասակարգին, ամ-
բողջ աշխատավոր ժողովրդին շահագործումից և ճնշումից ազատագրելու գոր-
ծին, սոցիալիստական հեղափոխության և նոր, կոմունիստական հասարա-
կարգի կառուցման գործին:

Պատմական նոր պայմանների համեմատ Լենինը զարգացրեց և բազ-
մապատկեց իր մեծ ուսուցիչների տեսական ժառանգությունը: Նա եռանդուն
կերպով պայքարում էր Մարքսի-Էնգելսի ուսմունքը քարացած, մեռյալ դոգ-
մայի վերածելու փորձերի դեմ: «Մենք Մարքսի տեսության վրա բնավ էլ չենք

ոտքի ելավ պաշտպանելու լենինիզմը: Նա գաղափարապես մերկացրեց ու
կազմակերպորեն ջախջախեց տրոցկիզմը: Նույն բախտը վիճակվեց աջ օպոր-
տունիստներին, որոնք ռեփկիայի էին ենթարկում կուսակցության գլխավոր
գիծը բուրժուական գաղափարախոսության ոգով, հանդես էին գալիս ին-
դուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման արագ տեմպերի և կու-
լակությունը որպես դասակարգ վերացնելու դեմ:
Կատարելով լենինյան պատգամները, կոմունիստական կուսակցությու-
նը, սովետական ժողովուրդը դժվարին ու փառավոր ուղի անցան: Սոցիալիզ-
մը, որի հաղթանակի անխուսափելիությունը ապացուցվել է գիտական կոմու-
նիզմի հիմնադիրների կողմից, սոցիալիզմը, որի կառուցումն սկսվեց Լենինի
ղեկավարությամբ, Սովետական Միությունում դարձել է ռեալ իրականություն:
Համաշխարհային տնտեսական և քաղաքական ուժերի սիստեմում սո-
ցիալիզմի օգտին նոր պատմական տեղաշարժ, միջազգային մասշտաբով լե-
նինիզմի պրակտիկ հաստատումը եղավ համաշխարհային սոցիալիստական
սիստեմի կազմվելը: Սովետական ժողովրդի, սոցիալիստական համագործակ-
ցության ժողովուրդների հերոսական ջանքերով նոր հասարակարգի ուղին
հիմնականում հարթված է և փորձարկված՝ աշխարհի բոլոր ժողովուրդների
համար:
**6.** Սոցիալիզմի կառուցման գլխավոր կենքը պրոլետարիատի դիկտա-
տուրան է: Նա բանվոր դասակարգին, աշխատավորությանը թույլ է տալիս
կապիտալի ուժին, բուրժուազիայի կապերին, կառավարման նրա փորձին,
մասնավոր սեփականատիրական գաղափարախոսությանը և հոգեբանությանը
հակադրել պրոլետարական համոզմունքի, գիտակցականության, կազմա-
կերպվածության, կարգապահության ուժը:
Ընդհանրացնելով Փարիզի կոմունայի, ռուսական երեք հեղափոխու-
թյունների փորձը, Լենինը կարգացրեց ու կոնկրետացրեց Մարքսի և Էնգելսի
ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի մասին, խորապես բացահայտեց
սովետների հանրապետության՝ նոր տիպի պետության պատմական նշանա-
կությունը, որն անչափ ավելի դեմոկրատական է, քան ամեն մի բուրժուա-
պառլամենտական հանրապետություն: «Եթե,— պնդում էր Լենինը,— հեղա-
փոխական դասակարգերի ժողովրդական ստեղծագործությունը չստեղծեր սո-
վետները, ապա պրոլետարական հեղափոխությունը Ռուսաստանում անհու-
սալի մի գործ կլիներ» (Երկեր, հ. 26, էջ 110):
Սովետական պետությունը գործնականում իրեն ցույց տվեց որպես սո-
ցիալիստական պլանային արտադրության կարգացման, հասարակության
կուլտուրական մակարդակի բարձրացման և աշխատավորների կոմունիստա-
կան դաստիարակության հզոր գործիք, որպես հասարակական և անձնական
շահերի պահպանության, նոր իրավակարգի, սոցիալիստական նվաճումների,
միջազգային հեղափոխական-ազատագրական շարժման պաշտպանության
գործիք:
Պրոլետարիատի դիկտատուրան նշանակում է շահագործողների համար
դեմոկրատիայի փոխարինում աշխատավորների սոցիալիստական դեմոկրա-
տիայով, իսկական ժողովրդապետության դարաշրջանի սկիզբը: Լենինը ռեալ
ազատություն նվաճելը կապում է նախ և առաջ աշխատանքը կապիտալի լծից
ազատագրելու, աշխատավորներին շահագործումից և հոգևոր ճնշումից ազա-
տագրելու հետ: Քաղաքական ազատությունները՝ խոսքի, մամուլի, ժողովնե-
րի և այլ ազատությունները նա միշտ մեկնաբանում էր դասակարգային դիր-
քերից, որպես աշխատավորների սոցիալիստական համախմբման, սոցիալիս-
տական գաղափարախոսության տարածման պայմաններ, որոնք բացառում
են հակասոցիալիստական պրոպագանդայի «ազատությունը», հակահեղա-
փոխական ուժերի կազմակերպման «ազատությունը»:
Սոցիալիստական հասարակարգում կազմակերպությունն ու կառավարումը
հենվում են դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի վրա, որը
նախատեսում է տնտեսության և սոցիալ-կուլտուրական շինարարության
միասնական, կենտրոնացված, պլանային ղեկավարման օրգանական զուգոր-
դում տեղական նախաձեռնության կարգացման, ընդհանուր նպատակին հաս-
նելու ուղիների, եղանակների ու միջոցների բազմազանության հետ: Մաս-



սաների սոցիալիստական նախաձեռնության ծավալման, նոր հասարակարգի
ճիշտ ղեկավարման անհրաժեշտ պայմանները Լենինը համարում էր՝ մի կող-
մից թույլ չտալ «մարզայնություն», տեղայնություն, որոնք ամենուրեք սահ-
մանակցվում են անարխիզմի հետ, իսկ մյուս կողմից՝ «բյուրոկրատական
ցենտրալիզմ», «դեմոկրատական ցենտրալիզմի շփոթումը բյուրոկրատիզմի և
շաբլոնացման հետ» (Երկեր, հ. 27, էջ 244):
Նոր հասարակարգի բուն էությունից օրինաչափորեն բխում է սոցիալիս-
տական պետության սոցիալական բազայի աստիճանական ընդլայնումը: Սո-
ցիալիզմի կառուցումով, երբ ամբողջ ժողովուրդը ամուր կերպով կանգնել է
սոցիալիստական դիրքերի վրա, բանվոր դասակարգը կոոպերացված գյուղա-
ցիության և աշխատավոր մտավորականության հետ սերտ միասնությամբ իր
դասակարգային պայքարն է մղում ընդդեմ միջազգային իմպերիալիզմի, բուր-
ժուական և մանրբուրժուական գաղափարախոսության: Պրոլետարիատի դիկ-
տատուրայի պետությունը վերածվում է ամբողջ ժողովրդի քաղաքական կազ-
մակերպության, որտեղ ղեկավար դեր է խաղում բանվոր դասակարգը իր
ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ:
Սոցիալիստական համաժողովրդական պետությունը շարունակում է պրո-
լետարական դիկտատուրայի գործը, կազմակերպող սկիզբ է ծառայում կոմու-
նիստական շինարարության խնդիրների լուծման գործում: Հենվելով բոլոր
աշխատավորների աջակցության, նրանց գիտակցական կազմակերպվածու-
թյան վրա, համաժողովրդական պետությունը միևնույն ժամանակ չի հրա-
ժարվում հարկադրանքի անհրաժեշտ միջոցներից այն անձանց նկատմամբ,
որոնք խախտում են սոցիալիստական հասարակության օրենքները, նրա նոր-
մերն ու սկզբունքները:
Սոցիալիստական պետության կարգացման բոլոր էտապներում նրա հա-
րակատ գործն է եղել ու մնում է սոցիալիզմի նվաճումների պաշտպանու-
թյունը հակահեղափոխության ու համաշխարհային իմպերիալիզմի ուժերի
ոտնձգություններից: Ամեն մի հեղափոխություն, Լենինի ասելով, միայն այն
դեպքում մի բան արժե, եթե նա կարողանում է իրեն պաշտպանել: «Կապը
միջազգային սոցիալիզմի հետ քանդում է նա,— ընդգծում էր Լենինը,— ով
թեթևամտորեն է սկսում վերաբերվել այն երկրի պաշտպանությանը, որտեղ
արդեն հաղթել է պրոլետարիատը (Երկեր, հ. 27, էջ 404): Կուսակցության,
Լենինի ստեղծած բանվորա-գյուղացիական կարմիր բանակը՝ հաղթանակած
ժողովրդի զինված ուժերը քաղաքացիական պատերազմում պաշտպանեցին
հեղափոխության նվաճումները:
Մեր ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հա-
նուն սոցիալիզմի անմահ սխրագործություն կատարեց՝ մասսայական հերո-
սություն ցուցադրելով Հայրենական մեծ պատերազմում: Այդ պատերազմը
ծանրագույն փորձություն և արիության դպրոց եղավ: Նա ավարտվեց մեծ
հաղթանակով, որովհետև սոցիալիզմը ապահովել էր ամբողջ սովետական
հասարակության անխորտակ միասնությունը, նրա էկոնոմիկայի հզորու-
թյունն ու չտեսնված շարժունակությունը, ռազմական գիտության բարձր
կարգացումը, դաստիարակել էր հիանալի ռազմիկներ և զորապետներ: Հա-
մաշխարհային իմպերիալիզմի հարվածային ուժերի՝ գերմանական ֆաշիզմի և
ճապոնական միլիտարիզմի ջախջախումը. սովետական բանակի կողմից իր
ազատագրական միսիայի իրականացումը վճռականապես նպաստեցին Եվրո-
պայի և Ասիայի մի շարք երկրներում ժողովրդա-դեմոկրատական հեղափոխու-
թյունների հաջողությանը:
Սովետական մարդիկ, կարգացնելով ժողովրդական տնտեսությունը և
բարձրացնելով երկրի պաշտպանունակությունը, իրենց ինտերնացիոնալ
պարտքն են համարում ամեն հնարավոր բան անել ամբողջ համաշխարհային
սոցիալիստական համագործակցության, նրա մեջ մտնող երկրներից յուրա-
քանչյուրի տնտեսական և ռազմա-քաղաքական ամրապնդման համար: Հակա-
հեղափոխության արտահանման իմպերիալիստական քաղաքականությանը
մեր համագործակցությունը հակադրում է իր անխորտակ հզորությունը և ժո-
ղովուրդների հեղափոխական նվաճումները պաշտպանելու վճռականությունը:

տեխնոլոգիայի արմատավորման և արտադրության կազմակերպման բազայի վրա արտադրողական նոր ուժերի ստեղծման ուղղությունը: Հետևելով լենինյան ուսմունքին, սովետների երկրի աշխատավորները կուսակցության ղեկավարությամբ իրականացրին երկրի ինդուստրացումը: Դա կատարվեց պատմականորեն շատ կարճ ժամանակամիջոցում, առաջին հնգամյակների պանծալի տարիներին, որի շնորհիվ ՍՍՀՄ-ը կանգնեց արդյունաբերական տեսակետից աշխարհի առավել զարգացած տերությունների կողքին:

Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց մանր ապրանքարտադրողների միլիոնավոր մասսաներին սոցիալիստական ռելսերի վրա փոխադրելու անհրաժեշտությունն ու եղանակները: Նրանց տնտեսությունների համար, ի տարբերություն խոշոր արտադրության, Լենինը առավել նպատակահարմար էր համարում սոցիալիստական հանրայնացման կոոպերատիվ ձևերը: Գյուղացիական անհատական տնտեսությունների կոլեկտիվացման և սովխոզների լայն զարգացման շնորհիվ գյուղում մանրապրանքային և կապիտալիստական կացութաձևերը իրենց տեղը զիջեցին սոցիալիստական կացութաձևին: Հանրային սեփականությունը իր երկու ձևերով (համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային) տնտեսական հարաբերությունների հիմքը դարձավ նաև գյուղատնտեսության մեջ: Դրա տեխնիկական բազայի որակական նորացման շնորհիվ այժմ Սովետական Միությունն ունի բարձր մեքենայացված խոշոր գյուղատնտեսական արտադրություն, որն ապահովում է պարենային և հումքային ռեսուրսների ավելացումը:

Վ. Ի. Լենինը տվեց սոցիալիստական էկոնոմիկայի պլանավորման և կառավարման արմատական պրոբլեմների գիտական լուծումը: Նրա անմիջական ղեկավարությամբ դրվում էին տնտեսությունը պլանաչափորեն վարելու հիմքերը՝ նրա բոլոր օղակներում: Պլանային էկոնոմիկայի կառավարման նկատմամբ լենինյան պահանջներն են գիտականությունը, կատարվող խնդիրների հեռանկարը և հերթականությունը ճիշտ որոշելու հմտությունը, կողմնորոշումը դեպի գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, առաջավոր փորձը, ճկունությունը, փոփոխվող պայմաններին արագորեն և հստակորեն արձագանքելու կարողությունը:

Սոցիալիզմը մտցնում է նյութական բարիքների բաշխման նոր սիստեմ: Յուրաքանչյուր աշխատող, աշխատանքային կոլեկտիվ նյութական վարձատրություն է ստանում իր գործունեության արդյունքների, հանրային համընդհանուր աշխատանքի մեջ ներդրած ռեալ ավանդի համեմատ:

Պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմը ստեղծում է մարդկանց հավասարություն արտադրության միջոցների նկատմամբ, վերացնում է շահագործումը, բայց, ինչպես նշել է Լենինը, սպառման, մարդկանց նյութական ապահովության լիակատար հավասարություն դեռ տալ չի կարող:

Սոցիալիզմի օրոք բաշխումը Լենինը դիտում էր որպես արտադրության աճին, աշխատանքի որակի և նրա արտադրողականության բարձրացմանը, աշխատավոր մարդու նախաձեռնության զարգացմանը նպաստող հզոր լծակ: Նա միաժամանակ պնդում էր, որ սոցիալիզմը անհնար է առանց աշխատանքի նկատմամբ գիտակցական, սոցիալիստական վերաբերմունքի, առանց այն բանի, որ մասսաները ըմբռնեն իրենց ռեալական ընդհանուր շահը: Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի առաջին ծիլերում՝ կոմունիստական շաբաթօրյակներում Լենինը տեսավ «սկիզբը մի հեղաշրջման, որն ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական է, քան բուրժուազիայի տապալումը, որովհետև այդ նշանակում է հաղթահարել սեփական անշարժությունը, սանձարձակությունը, մանրբուրժուական էգոիզմը,— այն սովորությունները, որ անիծյալ կապիտալիզմը ժառանգություն է թողել բանվորին և գյուղացուն» (Երկեր, h. 29, էջ 503—504):

Նշելով, որ մեր պլանների հաջողությունը առաջին հերթին կախված է մարդկանցից, Լենինն ինքը ձգտում և ուրիշներին էլ սովորեցնում էր «փորձել և ճանաչել իսկական կազմակերպիչներին, կգաստ միտք և գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ, համատեղ աշխա-



տանքն առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ» (Երկեր, h. 27, էջ 314):

Սովետական Միության օրինակով առաջին անգամ փայլուն կերպով ցուցադրված է էկոնոմիկայի սոցիալիստական կազմակերպման լենինյան սկզբունքների մեծ արդյունավետությունը: Մեր երկիրը արդյունաբերական արտադրության ծավալով դեռ նախապատերազմական ժամանակաշրջանում աշխարհում հինգերորդ տեղից անցավ երկրորդ տեղը: Խաղաղ աշխատանքի տարիներին արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կազմեց 14 տոկոս, իսկ սովետական ամբողջ ժամանակաշրջանում՝ 9,9 տոկոս, այդ նույն ժամանակաշրջանում ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի 2—4 տոկոսի դիմաց: Լիովին հաստատվեց լենինյան այն կանխագուշակումը, որ կապիտալիզմի վերացման հետևանքով հասարակության արտադրողական ուժերի զարգացումը մեծ չափով կարագանա:

**9.** Սոցիալիզմի խնդիրն է, նշում էր Լենինը, կուլտուրայի բոլոր նվաճումները ի սպաս դնել աշխատավորների շահերին: Քաղաքական իշխանությունը բանվոր դասակարգի ձեռքն անցնելուց հետո գիտության, տեխնիկայի, արվեստի նվաճումները դառնում են համաժողովրդական սեփականություն, ընդմիշտ բացառվում է մարդկային տաղանդը շահագործման առարկա կամ միջոց դարձնելու հնարավորությունը:

Կուլտուրական հեղափոխության լենինյան ծրագիրը կարևոր ավանդ եղավ հեղափոխական տեսության ու պրակտիկայի մեջ: Դրա հիմնական բովանդակությունն է բարձրացնել ժողովրդական լուսավորությունը՝ բոլոր պայմաններն ստեղծել, որ աշխատավորության ամենալայն մասսաները հաղորդակից լինեն քաղաքականությանը, գիտելիքներին, գեղագիտական արժեքներին, տարածել գիտական սոցիալիստական գաղափարախոսությունը և դրա սկզբունքների վրա կազմակերպել ժողովրդի ամբողջ հոգևոր կյանքը, հաղթահարել մանրբուրժուական հայացքներն ու բարքերը:

Ներկայումս ՍՍՀՄ-ի ազգաբնակչության ավելի քան մեկ երրորդ մասն ունի բարձրագույն ու միջնակարգ կրթություն, անցում է կատարվում դեպի ընդհանուր միջնակարգ կրթությունը: Ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ճյուղերում աշխատում է ավելի քան 820 հազար գիտաշխատող: Հանրային վիթխարի հարստություն է բանվորների, գյուղացիների, ծառայողների անընդհատ բարձրացող գործարարական որակավորումը:

Կուսակցությունը սոցիալիստական հասարակարգում հոգևոր ստեղծագործությունը միշտ համարել է համակուսակցական, համապրոլետարական գործի անբաժանելի մասը: Գրականության և արվեստի կուսակցականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքները հիմք ծառայեցին գեղարվեստական մտավորականության լավագույն ուժերին սովետական իշխանության գաղափարա-քաղաքական պլատֆորմի վրա համախմբելու համար: Հոգևոր գործունեության նկատմամբ լենինյան մոտեցման մեջ տաղանդի, ստեղծագործական որոնման նկատմամբ խնամքով վերաբերմունքը միահյուսվում է գաղափարա-քաղաքական դիրքավորումների սկզբունքայնության, բարոյագեղագիտական պահանջների հստակության հետ: Լենինը անհաշտ էր այն բանի նկատմամբ, ինչ նա անվանում էր հակասոցիալիստական գաղափարների «գրական քողարկում», մոդայիկ ֆրազի օգնությամբ հետադիմական հայացքներ անցկացնելու, բովանդակության աղքատությունը ձևամոլ աճպարարությամբ քողարկելու փորձերի նկատմամբ, գեղարվեստական երկերի գնահատման հարցում հանդես էր գալիս գռեհկացման ու սուբյեկտիվիզմի դեմ:

Սոցիալիստական կուլտուրան համաշխարհային պատմական քայլ է մարդկության հոգևոր զարգացման ասպարեզում:

**10.** Վ. Ի. Լենինը սոցիալիզմը բնութագրում էր իբրև դասակարգերի աստիճանական ոչնչացման և սոցիալական հավասարության հաստատման ժամանակաշրջան: Հասարակական հարաբերությունների սոցիալիստական վերափոխումը շահագործման սիստեմի, մասնավոր սեփականատիրական կացութաձևի կործանման, խորտակման և դրանց փոխարեն քաղաքի ու գյուղի աշխատավորների գիտակցաբար կազմակերպված միասնական համաժողովրդական կոլեկտիվի հաստատման երկմիասնական պրոցես է:

իրականացված են անվճար բուժսպասարկում, մայրության և մանկության պաշտպանություն: Կես դարում կյանքի միջին տևողությունը ավելի քան կրկնապատկվել է:

Սոցիալիզմն արդեն հսկայական բարիքներ է տվել աշխատավոր մարդուն: Այդ ամենաառաջավոր, իրոք ժողովրդական սոցիալական կարգերի հետագա զարգացումը հասարակությանը կմոտեցնի անհատի համակողմանի ծաղկմանը, գիտական կոմունիզմի հիմնադիրների կանխատեսումների իրականացմանը:

**11.** Կյանքն ապացուցեց լենինյան այն կանխատեսության ճշտությունը, որ սոցիալիստական հեղափոխությունների շնորհիվ համաշխարհային կապիտալիստական սիստեմից հետագայում կանջատվեն նոր պետություններ, որ պրոլետարիատի դիկտատուրան ազգային ուժից կդառնա ինտերնացիոնալ ուժ: Սոցիալիստական շինարարության մասին լենինյան ուսմունքի ընդհանուր նշանակությունը և գործունեությունը համակողմանիորեն հաստատված են երեք մայր ցամաքների շատ երկրների փորձով: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի շրջանակներում ինտերնացիոնալ համագործակցության կազմակերպումը վկայում է նոր տիպի միջազգային հարաբերությունների լենինյան սկզբունքների կենսականության մասին: Սոցիալիստական երկրների քաղաքական ու տնտեսական համախմբումը բազմապատկում է նրանցից յուրաքանչյուրի ուժն ու հզորությունը, հնարավորություն է տալիս լիովին օգտագործելու հասարակական կյանքի սոցիալիստական կազմակերպման առավելությունները:

Նոր կարգի կենսական ուժը դրսևորվեց ամենատարբեր պայմաններում իր համար ճանապարհ հարթելու, սոցիալ-կուլտուրական միանման խնդիրների լուծման տարբեր ձևեր գտնելու նրա ունակությամբ: Ինչպես կանխատեսում էր Լենինը, յուրաքանչյուր ազգ «յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ» (Երկեր, հ. 23, էջ 81):

Վ. Ի. Լենինը այն խորին համոզմունքն էր արտահայտում, որ սոցիալիզմը կապահովի ժողովուրդների սոցիալ-տնտեսական միասնությունը թե՛ ազգային, թե՛ ինտերնացիոնալ մասշտաբներով: Այդ միասնության նյութական հիմքը Լենինը տեսնում էր «միասնական, բոլոր ազգերի պրոլետարիատի կողմից ընդհանուր պլանով կարգավորվող համաշխարհային ամբողջական տնտեսություն ստեղծելու տենդենցի մեջ, որպիսին արդեն միանգամայն ակնբախորեն հայտնաբերված է կապիտալիզմի օրոք և, անկասկած, հետագա զարգացման ու լիակատար ավարտման է ենթակա սոցիալիզմի օրոք» (ПСС, т. 41, стр. 164):

Սոցիալիստական երկրների միջպետական հարաբերությունները բնորոշվում են արմատական շահերի ընդհանրությամբ: Եղբայրական երկրները միավորվում են մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությամբ, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր նպատակներով: Նրանք միասնական խնդիրներ ունեն կապիտալիզմի և նրա իմպերիալիստական քաղաքականության դեմ մղվող պայքարում:

Կյանքն ինքն է առաջ քաշում եղբայրական երկրների է՛լ ավելի սերտ տնտեսական ու քաղաքական մերձեցման պահանջը: Այդ խնդրի հաջող լուծմանը կոչված են ծառայելու նրանց ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը և Տնտեսական փոխօգնության խորհրդի XXIII հատուկ նստաշրջանում ընդունված սոցիալիստական ինտեգրացման հետագա զարգացման երկարաժամկետ ծրագիրը: Այդպիսի խոշոր միջոցառումների մշակումով եղբայրական կուսակցությունները ստեղծագործական ավանդ են ներդնում «աշխատավորների միջազգային կոոպերատիվի» ստեղծման մասին լենինյան գաղափարի զարգացման գործում:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի լինելությունը օբյեկտիվ և սուբյեկտիվ կարգի դժվարությունների հաղթահարման հետ կապված բարդ ու բազմակողմանի պրոցես է: Եղբայրական հարաբերություններ և համագործակցություն են հաստատվում ամենևին էլ ոչ միանման տնտեսական մակարդակ, պատմա-կուլտուրական ավանդույթներ ու կապեր, սոցիալական կառուցվածք ունեցող երկրների միջև:

Փորձը վկայում է, որ մանրբուրժուական տարրերը ամենուրեք, որտեղ նրանց հաջողվում է իրենց ազդեցությունը գործել, փորձում են խոչընդոտել սոցիալիստական վերափոխումների նորմալ ընթացքին, միմյանց հակադրել սոցիալիզմի երկրները, աշխուժացնել օպորտունիստական, ռևիզիոնիստական, նացիոնալիստական հայացքները, որոնք օգտագործում է իմպերիալիզմը: Այդ վտանգը ուժեղանում է այնտեղ, որտեղ նահանջում են մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից:

«Ձախ» ռևիզիոնիզմը գրոհում է գիտական կոմունիզմի տեսության և պրակտիկայի վրա, ձգտում է այն փոխարինել հետադիմական-ուտոպիական և ռազմա-զորանոցային «սոցիալիզմով»: Դրա մանրբուրժուական-նացիոնալիստական էությունը մատնում է առանձին երկրների առաջելական դերի քարոզը, հեգեմոնիզմի, շովինիզմի, մարտնչող հակասովետիզմի ոգով մտքերի մասսայական մշակումը:

Մյուս կողմից, աջ ռևիզիոնիստները պրոպագանդում են, այսպես կոչված, «լիբերալացված» սոցիալիզմի կոնցեպցիան, որը ժխտում է մարքս-լենինյան կուսակցությունների ղեկավար դերը, սոցիալիստական դեմոկրատիան փոխարինում բուրժուական տիպի քաղաքական լիբերալիզմով, ի չիք դարձնում ժողովրդական տնտեսության կենտրոնացված պլանավորումն ու ղեկավարումը, նպատակ դնում սանձազերծել շուկայական տարերք և մրցակցություն:

ՍՄԿԿ-ն բարձր է գնահատում այն պայքարը, որ եղբայրական երկրների կոմունիստները մղում են նոր կարգի դիրքերը խարխլելու ամեն տեսակ փորձերի դեմ, սոցիալիզմի կառուցման և համաշխարհային սոցիալիստական սիստեմի փոխհարաբերությունների պրոբլեմների նկատմամբ օպորտունիստական մոտեցման դեմ, կուսակցությունների միջև եղած տարաձայնությունները մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային հիման վրա հաղթահարելու համար: Նոր տիպի միջազգային հարաբերությունների հաստատման հուսալի պայմանը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ճիշտ քաղաքականությունն է, նոր հասարակարգի կառուցման լենինյան ուսմունքի անշեղ կենսագործումը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կիրառումը:

Առանձին երկրների շրջանակներում և միջազգային մասշտաբով սոցիալիզմի կառուցումն ու զարգացումը իրենց բախտի տերը դարձած աշխատավորական միլիոնավոր մասսաների պատմական ստեղծագործության մեծ արգասիքն են: Մոլորակի աշխատավոր բնակչությանը այդ պատմական ստեղծագործության մեջ ընդգրկելու մասշտաբները, ինչպես որ կանխատեսում էր Լենինը, մեծանում են: Այդ բանում իր արտահայտությունն է գտնում մարդկային հասարակության նախապատմությունից նրա իսկական, գիտակցաբար կերտվող պատմությանն անցնելու օրինաչափ պրոցեսը:

## III. ԼԵՆԻՆԻԶՄԸ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԴԵՄ, ԱՇԽԱՐՀԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՆՈՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԻ ԴՐՈՇՆ Է

**12.** XX դարի դասակարգային ճակատամարտերի փորձը ցույց տվեց, որ միայն լենինյան ուսմունքով առաջնորդվելով՝ կարելի է հասկանալ աշխարհում կատարվող հեղափոխական վերափոխումների էությունն ու բնույթը, ճիշտ գնահատել դրանց մասնակցող ուժերի դերը, ճշգրիտ նախանշել համաշխարհային սոցիալիստական հեղափոխության զարգացման հեռանկարները:

Ներկայումս, նախկինի համեմատությամբ է՛լ ավելի հրամայական է դառնում կապիտալիստական արտադրական հարաբերությունները սոցիալիստական հարաբերություններով փոխարինելու անհրաժեշտությունը: Սակայն,

ընդգծել է Լենինը, համաշխարհային մասշտաբով շահագործող վերջին հասարակարգի տապալումը, հասարակական նոր ֆորմացիայի կազմավորումը բարդ, տևական ու բազմակողմանի պրոցես է: Սոցիալիզմին անցնելու նյութական նախադրյալները բոլորից շուտ հասունացան արդյունաբերական տեսակետից զարգացած կապիտալիստական երկրներում: Բայց դրանց մեծ մասում իմպերիալիստական բուրժուազիային հաջողվեց պահպանել իր իշխանությունը: Արդի պայմաններում դա գլխավոր խոչընդոտն է սոցիալական առաջադիմության ճանապարհին:

Սոցիալիզմի հաջողությունների դեմ-հանդիման իմպերիալիստական բուրժուազիան բոլոր ճիգերը գործադրում է պաշտպանելու իր շահերը, պահպանելու իր հիմնական դիրքերը: Նա մանևրում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, իր տիրապետությունը պահպանելու նպատակով մոբիլիզացնում է նյութական բոլոր ռեսուրսները, մոնոպոլիաների ուժն ավելի ու ավելի սերտորեն է միացնում պետության ուժին, քաղաքական ճարպկություն է հանդես բերում՝ փորձելով ետ մղել սոցիալիզմի գրոհը:

Էկոնոմիկայի բնագավառում կապիտալիզմը, օգտագործելով գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները, հենվելով բարձր կազմակերպված արտադրական հզոր մեխանիզմի վրա, ձգտում է պետության օգնությամբ մոբիլիզացնել բոլոր ռեսուրսները համազգային մասշտաբով, ավելացնել տնտեսական զարգացման տեմպերը, պահպանել արտադրության համեմատաբար բարձր արդյունավետությունը:

Քաղաքական բնագավառում բուրժուազիան մասսաներին ճնշելու բիրտ ձևերը խորամանկորեն զուգորդում է աշխատավորներին իր ազդեցությանը ենթարկելու նոր միջոցների ու մեթոդների հետ: Չարաշահելով «սոցիալական պարտնյորության», «բաց հասարակության» լոզունգները, նա ձգտում է իրեն ենթարկել բանվորական կազմակերպությունները, դրանք տարրալուծել կեղծ դեմոկրատական բազմակուսակցական սիստեմի մեջ, որը կոչված է քողարկելու իմպերիալիստական վերնախավերի դիկտատուրան: Դրա հետ մեկտեղ մոնոպոլիաները, տեսնելով, որ անհաջողության են մատնվում բանվորական շարժումը բուրժուական քաղաքական մեխանիզմին ենթարկելու իրենց հաշիվները, ավելի ու ավելի հաճախակի են դիմում ժողովուրդների ճնշման բռնի մեթոդներին, ուռճանում են իմպերիալիստական պետությունների պատժիչ մարմինները, մտցվում են հակաբանվորական նոր օրենքներ:

Սոցիալական բնագավառում մոնոպոլիստական կապիտալը ձգնում է զիջումներով և ողորմություններով քողարկել աշխատավորների շահագործման ուժեղացումը, ձգտում է կանխել բուրժուազիայի համար առավել վտանգավոր դասակարգային ցնցումները: Լենինն ասել է, որ ոչ կարևոր, երկրորդական զիջումներով, հանուն կարևորի, գլխավորի պահպանման, կապիտալիզմը ջանում է բանվորներին շեղել դասակարգային պայքարից, ընդլայնել և ամրապնդել իր տիրապետության սոցիալական բազան:

Իսկ իրականում բանվոր դասակարգի շահագործման աստիճանը մեծանում է, իսկ ժամանակակից արտադրողական ուժերի կիրառումից ստացվող հիմնական շահույթները բաժին են ընկնում արդյունաբերաֆինանսական օլիգարխիային: Այդ ամենը ուժեղացնում է գլխավոր կապիտալիստական տերությունների սոցիալական հակամարտությունները, նրանց տնտեսական դժվարությունները, հանգեցնում վալյուտաֆինանսական խրոնիկական ճգնաժամի, գործազրկության, միջիմպերիալիստական հակասությունների սրման:

Իմպերիալիստական պետությունները ազգային հարստությունների զգալի մասը օգտագործում են պատերազմներ նախապատրաստելու և մղելու համար: Ռազմարդյունաբերական կոնցեռները, Լենինի արտահայտությամբ, օգտագործելով «օրինականացված գանձագողության» սիստեմը, կորզում են պետության կողմից երաշխավորվող հսկայական շահույթներ: Ռազմարդյունաբերական կոմպլեքսը դարձել է իմպերիալիզմի հարվածային ուժը, որը բուրժուական պետությունների ներքին ու արտաքին քաղաքականության մեջ խթանում է հետադիմական ուժերին :

Ժամանակակից իմպերիալիզմի առավել ագրեսիվ ջոկատները, նախ և



առաջ ԱՄՆ-ում և ԳՖՀ-ում, չեն կորցրել XX դարի պատմական ճակատամարտերը «վերախաղալու», ռևանշի հասնելու, սոցիալիզմը համաշխարհային ազդեցության բարձունքներից ցած նետելու, գաղութատիրությունը նոր ձևով վերստեղծելու հույսերը: ԱՄՆ-ի իմպերիալիզմը դարձել է հակակոմունիզմի շտաբ, միջազգային հետադիմության և միլիտարիզմի կենտրոն: Միայն վերջին տարիներս նա զինված ինտերվենցիա է կատարել Վիետնամի, Կուբայի, Կամբոջայի, Դոմինիկյան Հանրապետության դեմ, դիմել ռազմական պրովոկացիաների, ակտիվորեն պաշտպանել արաբական պետությունների դեմ սանձազերծված իսրայելական ագրեսիան, մի շարք երկրներում կատարված հետադիմական հեղաշրջումները: Եվրոպայի խաղաղության և անվտանգության համար լուրջ սպառնալիք է ներկայացնում ԳՖՀ-ում ռևանշիստական և նեոնացիստական ուժերի աշխուժացումը:

Բայց աշխարհը արմատապես փոխվել է: Իմպերիալիզմը ընդմիշտ կորցրել է համաշխարհային գործերի լուծման իր մենաշնորհը, որ նա ուներ մինչև 1917 թվականի հոկտեմբերը, զրկվել է համաշխարհային ասպարեզում տիրապետող ուժ լինելուց: Մեր ժամանակներում միանգամայն ակնբախորեն պարզ է դարձել, որ իմպերիալիստական ստրատեգիայի հիմնական նպատակը՝ սոցիալիստական կարգերի ոչնչացումը, անիրագործելի է: «Իմպերիալիզմն անզոր է վերադարձնելու իր կորցրած պատմական նախաձեռնությունը, ետ շրջելու արդի աշխարհի զարգացումը», ասվում է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության եզրակացության մեջ: Սոցիալիզմը շարունակում է պատմական հարձակումը: Սա է հեղափոխական պրոցեսի մասին լենինյան ուսմունքի կենսագործման, գիտական և նպատակասլաց սոցիալիստական քաղաքականության, համաշխարհային սոցիալիզմի նյութական ու բարոյական հզորությունը կերտող միլիոնավոր մարդկանց համառ աշխատանքի օրինաչափ արդյունքը:

**13.** Այն պայմաններում, երբ իմպերիալիզմի համաշխարհային սիստեմը հասունացել էր սոցիալիստական հեղափոխության համար, իսկ մի շարք օղակներում արդեն փլուզվել էր, Լենինը վճռական նշանակություն էր տալիս այն ուժերի ձևավորմանն ու ամրապնդմանը, որոնք կոչված են մինչև վերջ հասցնելու հեղափոխությունը:

Հոկտեմբերից հետո այդ ուժերի մեջ կենտրոնական դերը Լենինը հատկացնում էր նոր, սոցիալիստական հասարակարգ կառուցող երկրների բանվոր դասակարգին, աշխատավորներին: Այդ բեկումնային պահից սոցիալիզմի հաղթանակած ուժերը դառնում են հեղափոխական շարժման ավանգարդը: Սոցիալիզմի համաշխարհային ասպարեզ դուրս գալը մեծացնում է կապիտալիստական պետությունների պրոլետարիատի հեղափոխական հնարավորությունները, բաց անում ազգային-ազատագրական շարժման զարգացման նոր հեռանկարներ:

Մեր ժամանակներում, Լենինի հանճարեղ կանխատեսմանը համապատասխան, սոցիալիզմը դարձել է պատմական զարգացման ամենաազդեցիկ հասարակական ուժը, սոցիալական առաջադիմության վիթխարի արագացուցիչը: Արդի աշխարհի դեմքը որոշվում է «երկու եղանակների, երկու ֆորմացիաների, երկու տնտեսությունների՝ կոմունիստական ու կապիտալիստական տնտեսությունների հակամարտությամբ» (Երկեր, հ. 31, էջ 574):

Երկու սիստեմների մրցության արդի փուլում առանձնապես հրատապ են հնչում Լենինի այն խոսքերը, որ համաշխարհային հեղափոխության վրա սոցիալիզմի ներգործության գլխավոր լծակը նրա տնտեսական քաղաքականությունն է, կապիտալիզմի արտադրողական ուժերին գերազանցող նոր հասարակարգի տեխնիկա-տնտեսական հիմքի ստեղծումը: «Կլուծենք այդ խնդիրը,— նշել է Լենինը,— և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես» (Երկեր, հ. 33, էջ 562):

Սոցիալիստական աշխարհի հեղափոխական ստրատեգիայի մյուս կողմը, գրել է Լենինը, «առաջավոր երկրների սոցիալիստական պրոլետարիատի հեղափոխական շարժմանն աջակցելն է... Ընդհանրապես բոլոր երկրների, հատկապես գաղութների և կախյալ երկրների դեմոկրատական և հեղափոխական շարժմանն աջակցելը» (Երկեր, հ. 27, էջ 177—178): ՍՄԿԿ-ն հետևողակա-

րի գործունեության մեջ: Վճռականորեն հանդես գալով ամեն տեսակ ազգային նիհիլիզմի դեմ, Լենինը հեղափոխականներին սովորեցնում էր հետևողականորեն հաշվի առնել ազգային շահերը, պաշտպանել բոլոր ազգերի իրավահավասարության սկզբունքները, նրանց անկախության, ինքնուրույն զարգացման իրավունքը: Նա պարզաբանում էր, որ սոցիալիզմի, նրա կառուցման, նրա պաշտպանության համար մղվող պայքարը ժողովրդի ազգային շահերի համար պայքարելու լավագույն եղանակն է հենց: Հեղափոխականների ամեն մի ջոկատի կողմից իրենց երկրի ազգային ու սոցիալական ազատագրության խնդրի արդյունավետ կատարումը համաշխարհային սոցիալիստական հեղափոխության ընդհանուր շահերի համար պայքարելու անհրաժեշտ նախադրյալն է:

Դրա հետ միասին Լենինն ընդգծում էր, որ ինտերնացիոնալիստական քաղաքականությունը չի սահմանափակվում համաշխարհային պրոլետարիատի ընդհանուր գործում ազգային ավանդի ներդրումով: Հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին ներառնում է հեղափոխական մարտիկների բոլոր ազգային ջոկատների միավորումը միասնական դաշինքի մեջ՝ միջազգային իմպերիալիզմի նկատմամբ հաղթանակ տանելու համար:

Ոչ միայն խոշոր տերությունների պրոլետարիատը, այլև ոչ մեծ երկրների բանվոր դասակարգը, պայքարելով հանուն իր ազգային իրավունքների և շահերի, ասում էր Լենինը, չպետք է մոռանա իր պարտականությունները, որ «նա պետք է պայքարի մանր-ազգային նեղմտության, փակվածության, կղզիացման *դեմ*, հանուն ամբողջի ու ընդհանրականի հաշվառման, հանուն մասնավորի շահերն ընդհանուրի շահերին ենթարկելու» (Երկեր, հ. 22, էջ 467—468): Ամեն մի այլ մոտեցում վերջին հաշվով նշանակում է սահել դեպի նացիոնալիզմ, որը հեղափոխական գործի մահացու թշնամին է: Նացիոնալիզմը «բաժանման ու մասնատման իր տակտիկայով... *ի չիք է դարձնում* բոլոր ազգերի, բոլոր ռասաների, բոլոր լեզուների պրոլետարների մերձեցման ու միավորման մեծ պատգամը» (Երկեր, հ. 6, էջ 664):

Արդի պայմաններում պրոլետարական ինտերնացիոնալիզմը հատուկ հրատապություն է ձեռք բերում, դառնում սոցիալական առաջադիմության կարևորագույն նախադրյալը, իմպերիալիզմի վրա հետագա հարձակման համար հեղափոխական բոլոր ուժերի համախմբման կարևորագույն նախադրյալը:

Հեղափոխական պրակտիկ փորձը սկսած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից, որը պատմության մեջ առաջին անգամ օրինակ ցույց տվեց հեղափոխական ու դեմոկրատական բոլոր շարժումները մեկ հոսանքի մեջ միացնելու համար, ապացուցեց հեղափոխական ուժերի միասնության հարցի լենինյան դրվածքի խոր հիմնավորվածությունն ու արգասավորությունը: Մի մեծ խումբ երկրներում սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակը, հեղափոխական բանվորական շարժման հաջողությունները, ազգային-ազատագրական հեղափոխությունների հաղթանակը, ազգային դեմոկրատիայի պետությունների առաջացում. ահա միջազգային սոցիալական հեղափոխության ուժերի միասնության, համագործակցության ու փոխօգնության պտուղները:

Միջազգային համերաշխությունը եղել ու մնում է կոմունիստական ու բանվորական շարժման անկյունաքարը: Նշելով, որ կարևոր է հաշվի առնել կոնկրետ պատմական առանձնահատկությունները և այն իրադրության յուրօրինակությունը, որի պայմաններում հարկ է լինում գործելու յուրաքանչյուր կուսակցության, Լենինը միշտ պաշտպանում էր կոմունիստական շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնությունը: Խնդիրն այն է, գրել է նա ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում, «որ կարողանանք կոմունիզմի ընդհանուր և հիմնական սկզբունքները կիրառել դասակարգերի ու կուսակցությունների հարաբերությունների այն *յուրօրինակության* նկատմամբ, դեպի կոմունիզմն ընթացող օբյեկտիվ զարգացման այն *յուրօրինակության* նկատմամբ, որը հատուկ է յուրաքանչյուր առանձին երկրի և որը պետք է կարողանալ ուսումնասիրել, գտնել, կռահել» (Երկեր, հ. 31, էջ 94): Ըստ Լենինի, միասնությունը հիմնական, ար-



մատական, էական հարցում չի խախտվում, այլ ապահովվում է մանրամասների, տեղական առանձնահատկությունների մեջ, գործի նկատմամբ ցուցաբերվող մոտեցման եղանակների մեջ եղած բազմազանությամբ:

Հեղափոխական ուժերի միասնության նշանակությունը աճում է պատմական զարգացման ընթացքում: Որքան լիովին են հասունանում սոցիալական հեղաշրջման օբյեկտիվ նախադրյալները, որքան մեծ են դրա իրականացման համար մարտնչողների հաջողությունները, այնքան ակտիվ է դասակարգային թշնամու դիմադրությունը, ուրեմն՝ այնքան կարևոր է հեղափոխականների կայուն փոխօգնության ապահովումը:

Կես դար առաջ Լենինն անհրաժեշտ համարեց «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոմունիստների մարտական փորձված կոչի մեջ մտցնել գաղութների ու կախյալ երկրների ժողովուրդներին ուղղված դիմումը՝ «Բոլոր երկրների պրոլետարներ և շահագործվող ժողովուրդներ, միացե՛ք»: Ներկայումս միջազգային կոմունիստական շարժումը հավատարիմ մնալով Մարքսի-Էնգելսի-Լենինի գաղափարներին, մշակել է նոր լոզունգ, որը համապատասխանում է հեղափոխական պրոլետարական ինտերնացիոնալիզմի ժամանակակից, հարստացած հասկացությանը՝ «Սոցիալիստական երկրների ժողովուրդներ, կապիտալի երկրների պրոլետարներ, դեմոկրատական բոլոր ուժեր, ազատագրված և ճնշված ժողովուրդներ, միացե՛ք իմպերիալիզմի դեմ, խաղաղության, ազգային անկախության, սոցիալական առաջադիմության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող ընդհանուր պայքարում»:

**17.** Լենինի նախաձեռնությամբ հիմնադրվեց III կոմունիստական ինտերնացիոնալը, որը համաշխարհային մասշտաբով միացրեց մարքսիզմ-լենինիզմը և միջազգային բանվորական շարժումը: Կոմինտերնը հաջողությամբ լուծեց իր առջև դրված խնդիրները. վերականգնեց բանվորական շարժման միջազգային բնույթը, փրկեց նրա հեղափոխական բովանդակությունը, որին լուրջ վնաս էր հասցրել II ինտերնացիոնալի լիդերների դավաճանությունը, հեղափոխական հեռանկար բաց արեց կապիտալիստական աշխարհի բանվոր դասակարգի, աշխատավոր զանգվածների համար, մատնանշեց պայքարի պարզ ու հստակ ուղիները պատմական նոր պայմաններում, հսկայական աշխատանք կատարեց կոմունիստական կուսակցությունների ստեղծման, գաղափարական ու կազմակերպական համախմբման ուղղությամբ: Կոմինտերնը բոլոր երկրների կոմունիստներին և աշխատավորներին կոչ արեց անհողդողդ կերպով հանդես գալ սոցիալիզմի առաջին երկրի պաշտպանությամբ:

Առաջնորդվելով լենինյան գաղափարներով, կոմունիստական ինտերնացիոնալը քառորդ դար շարունակ պարզորոշ պատասխաններ էր տալիս բանվոր դասակարգի առջև, մարդկության առջև ծառացած՝ պատերազմի ու խաղաղության, հանուն դեմոկրատիայի, ընդդեմ ֆաշիզմի մղվող պայքարի, ազգային-ազատագրական շարժման զարգացման, սոցիալիզմի դերի և մասսաներին սոցիալիստական հեղափոխությանը մոտեցնելու ուղիներին վերաբերող արմատական հարցերին: Կոմինտերնի առաջադրած շատ գաղափարներ հաստատուն կերպով մտել են մարքսիզմ-լենինիզմի զինանոցը:

Կոմինտերնի լենինյան դպրոցով անցան կոմունիստական շատ կուսակցություններ, որոնք պահպանեցին, զարգացրին և ամրապնդեցին հեղափոխական ուղղությունը միջազգային բանվորական շարժման մեջ: Միայն այդպիսի կուսակցությունների ղեկավարությամբ է, Վ. Ի. Լենինի խոսքերով, «պրոլետարիատը ընդունակ է ծավալելու իր հեղափոխական գրոհի ամբողջ հզորությունը... ընդունակ է ծավալելու իր ամբողջ ուժը» (Երկեր, հ. 31, էջ 220): Վ. Ի. Լենինը անդուլ հոգատարություն էր ցուցաբերում միջազգային կոմունիստական շարժման ստեղծման ու զարգացման նկատմամբ, ձևակերպում նոր տիպի մարքսիստական կուսակցության գործունեության կարևորագույն սկզբունքները:

Մեր դարաշրջանի մարքսիստական կուսակցությունը դա՝

հեղափոխական կուսակցություն է, որն իր ամբողջ գործունեությունը նպատակամղում է պրոլետարիատի նախապատրաստմանը «պետական իշխանություն նվաճելու համար և ընդ որում իշխանությունը նվաճելու հենց պրոլետարիատի դիկտատուրայի ձևով» (Երկեր, հ. 31, էջ 222): Այդպիսի կու-

բոլոր ձևերի ծաղկմամբ: Նրանց հասարակական արժեքը որոշվում է գեղարվեստական բարձր վարպետությամբ, գաղափարական անզիջմամբ և կուսակցական կրքոտությամբ կոմունիստական իդեալների հաստատման գործում:

Կոմունիզմ սովորել՝ այս է Լենինի պատվիրանը կոմերիտականներին, պատանիներին ու աղջիկներին: Աշխատասիրություն, գիտելիքների ծարավ, գաղափարական համոզվածություն, հայրենասիրական անձնվիրություն և ինտերնացիոնալիզմ՝ սովետական երիտասարդության այս բոլոր հատկությունները հիանալի վկայությունն են այն բանի, որ նա սրբորեն է կատարում Լենինի պատգամները, ձգտում աշխատել ու ապրել այնպես, ինչպես սովորեցնում էր մեծ Լենինը:

«Մենք ապագայի կուսակցություն ենք, իսկ ապագան երիտասարդությանն է պատկանում: Մենք նորարարների կուսակցություն ենք, իսկ նորարարների հետևից միշտ ավելի սիրով երիտասարդությունն է գնում» (Երկեր, հ. 11, էջ 442): Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս երիտասարդության գիտակցական մասնակցությանը հասարակական-քաղաքական կյանքին, հավատում է նրա ուժերին և հնարավորություններին: Նա կարևորագույն համակուսակցական, համաժողովրդական գործ է համարում երիտասարդության կոմունիստական դաստիարակության, «կոմունիզմը վերջնականապես իրականացնելու ընդունակ սերունդ դաստիարակելու» (Երկեր, հ. 29, էջ 120) Լենինի առաջադրած խնդիրը:

Կոմունիստական շինարարության ուղիներում մեզ, Լենինի խոսքերով ասած, սպասում է վիթխարագույն աշխատանք, կպահանջվի շատ ավելի ճիգ ու ջանք գործադրել, քան մինչև օրս: Կյանքը դնում է նոր խնդիրներ ու պրոբլեմներ, որոնք պահանջում են խոր ուսումնասիրություն և ստեղծագործական լուծումներ: Հաջող առաջընթացի երաշխիքն է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը: Լենինյան ուղիով, կուսակցության ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը հասավ Հոկտեմբերի և սոցիալիզմի հաղթանակին: Լենինյան ուղիով մենք գնում ենք և կհասնենք կոմունիզմին:

*Լենինի անմահ գաղափարներն ու գործերը, նրա կյանքի մեծ սխրանքը սովետական մարդկանց համար, համայն աշխարհի աշխատավորների համար ոգևորության և լավատեսության անսպառ աղբյուր են:*

*Լենինի պայծառ հանճարը լուսավորում է հեղափոխական պայքարի և ստեղծագործական կերտման ճանապարհը:*

*Ապրել և աշխատել լենինաբար՝ նշանակում է բոլոր ուժերը, գիտելիքները, եռանդը նվիրաբերել աշխարհի ամենաառաջադիմական և արդար գործին՝ աշխատավորներին ճնշումից ու շահագործումից լիովին ազատագրելու համար, կոմունիստական իդեալների հաղթանակի համար, մարդկության լավագույն ապագայի համար մղվող պայքարին:*

*Շարունակելով Լենինի գործը, սովետական ժողովուրդը համառ աշխատանքով բազմապատկում է հայրենի հարստությունը, զարգացնում սոցիալիստական տնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան, անդուլ հոգատարություն է ցուցաբերում սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդման նկատմամբ, կառուցում է մարդուն վայել կյանք:*

*Շարունակելով Լենինի գործը, սովետական ժողովուրդը ՍՄԿԿ ղեկավարությամբ էլ ավելի սերտորեն է համախմբում իր շարքերը, ամրապնդում ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը:*

*Շարունակելով Լենինի գործը, սովետական ժողովուրդն ամրապնդում է ինտերնացիոնալ համերաշխությունը սոցիալիստական երկրների ժողովուրդների հետ, միջազգային բանվորական շարժման հետ, դեմոկրատիայի և ազգային ազատագրության, կայուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի համար պայքարող մարտիկների հետ:*

*Վլադիմիր Իլյիչ Լենինի գաղափարները մարմնավորվում են կոմունիստների գործունեության մեջ, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների պայքարում, սոցիալիզմի և կոմունիզմի հաղթական զարգացման գործում, մարդկության անհաղթելի սոցիալական առաջադիմության մեջ:*

*Լենինի անունն ու գործը հավերժ կապրեն:*

# ՀԻԱՆԱԼԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՓԱՅԼՈՒՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Մարդկությունը գտնվում է համաշխարհային նշանակություն ունեցող պատմական տարելիցի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի շեմին: Մեր դարաշրջանի մեծագույն հանճարի գաղափարները հսկայական ազդեցություն են գործել և շարունակում են գործել համաշխարհային զարգացման ամբողջ ընթացքի վրա: Այսօր հայտնի է ամբողջ աշխարհին, որ Սովետական Միությունը վիթխարի հաջողություններ է ձեռք բերել կոմունիստական շինարարության ասպարեզում և դարձել մարդկության բոլոր առաջադիմական ուժերի դրոշակակիրը:

Մեր երկրի կյանքը, աշխատավորների հաջողություններն ու սխրանքները լուսավորված են լենինյան գաղափարներով: Սովետական ժողովուրդը մեծ հավատով շարունակում է Լենինի գործը: Նա համառ աշխատանքով բազմապատկում է հայրենի հարստությունը, զարգացնում գիտությունն ու կուլտուրան, անդուլ հոգատարություն ցուցաբերում սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդմանը, իր բոլոր ուժերը, գիտելիքները, եռանդը նվիրաբերում կոմունիստական իդեալների կենսագործման համար մղվող պայքարին: Նրան դեպի գալիքն է առաջնորդում կոմունիստական կուսակցությունը՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը:

Պատմությունն ընթանում է կոմունիզմի օգտին:

Սովետական ժողովուրդը 1969 թվականին հրաժեշտ տվեց աշխատանքային նորանոր հաջողություններով: Նա իրականացրեց արդյունաբերական արտադրանքի ավելացման, տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառության՝ ՍՄԿԿ XXIII համագումարի կողմից հաստատված հնգամյա պլանի դիրեկտիվ առաջադրանքները: Երկրի գլխավոր ազգային հարստությունը՝ հիմնական ֆոնդերը կազմեցին 170 միլիարդ ռուբլի: Հնգամյակի անցած 4 տարում 44 միլիոն մարդ ստացավ նոր բնակարան, 20 տոկոսով ընդլայնվեց մանկապարտեզների ցանցը, 16 տոկոսով ավելացավ հիվանդանոցային մահճակալների թիվը, իսկ սովետական մարդկանց ռեալ եկամուտները տարեկան միջին հաշվով աճեցին 5,9 տոկոսով:

1969 թվականը նշանավորվեց սովետական մարդկանց աշխատանքային խանդավառության նոր վերելքով, որ առաջ են բերել Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստությունը, այդ առթիվ կուսակցության

Կենտրոնական կոմիտեի որոշումը, որոնք վառ կերպով բնութագրում են Լենինի մեծությունը՝ որպես Մարքսի և Էնգելսի հեղափոխական ուսմունքի հանճարեղ շարունակողի ու զարգացնողի, մեր կոմունիստական կուսակցության ստեղծողի, պատմության մեջ սոցիալական մեծագույն հեղափոխության ղեկավարի և աշխարհում սոցիալիստական առաջին պետության հիմնադրի:

1969 թվականը մեր երկրում լենինյան պատգամների կենսագործման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզներում ձեռք բերված նորանոր հաջողությունների տարի էր: Ինչպես նշված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում, մեր կուսակցության տնտեսական քաղաքականության էությունն այն է, որ գիտության ու տեխնիկայի նվաճումների համակողմանի օգտագործման, հանրային ամբողջ արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման բազայի վրա ապահովվի արդյունաբերության հետագա նշանակալից աճ, գյուղատնտեսության զարգացման կայուն արագ տեմպեր և դրանց շնորհիվ էականորեն բարձրանա ժողովրդի կենսամակարդակը, առավել լրիվ բավարարվեն սովետական բոլոր մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները: Սովետական ժողովուրդն անցած տարում ակտիվորեն պայքարեց կուսակցության տնտեսական քաղաքականության հաղթանակի համար, ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ, նրա յուրաքանչյուր օղակում ապահովեց բազմակողմանի տեխնիկական առաջընթացը, գիտության նորագույն տվյալների պրակտիկ օգտագործումը, ինդուստրացման ենթարկեց տնտեսության շատ ճյուղեր, առավել արդյունավետ օգտագործեց նյութական ռեսուրսները: Սոցիալիստական գյուղատնտեսությունը, որն առավել ինդուստրիալ է դառնում, հագեցավ տեխնիկապես, ուժեղ թափով շարունակվեց մելիորացիայի, քիմիացման, հողագործության և անասնապահության կուլտուրայի բարձրացման՝ կուսակցության առաջադրած տնտեսական ծրագրի իրագործումը:

1969 թվականը նշանավորվեց մեր երկրի գիտատեխնիկական վիթխարի առաջընթացով. Լենինի հարթաքանդակը Վեներայի վրա, սովետական «Սոյուզ» տիեզերանավերի ընտանիքի խմբային երկու թռիչքները, որոնք արդարև, ավելի մեծացրին մեր հայրենիքի տիեզերական փառքը: Անցյալ տարի տեղի ունեցավ կոլտնտեսականների համամիութենական III համագումարը, որը նոր փուլ բացեց կոլտնտեսային կարգերի զարգացման ասպարեզում և է՛լ ավելի ամրապնդեց բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը՝ սովետական հասարակարգի անսասան հիմքը:

«Անցած տարին,— ասված է սովետական ժողովրդին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նոր տարվա շնորհավորանքի մեջ,— միջազգային ասպարեզում Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության երկրների դիրքերի հետագա ամրապնդման տարի էր, մարքսիզմ-լենինիզմի նոր հաղթանակների, համաշխարհային կոմունիստական շարժման ամրապնդվող համախմբվածության տարի»: Այդ գործում կարևոր փուլ է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունը, որի ընդունած փաստաթղթերը կոմունիստներին, բոլոր հեղափոխականներին զինեցին գործողությունների հստակ ծրագրով: Խորհրդակցությունը նորից հաստատեց, որ կոմունիստական շարժման ուժը հավատարմությունն է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, Մարքսի-Էնգելսի-Լենինի մեծ ուսմունքին:

Ազգերի լենինյան ընտանիքում տնտեսական և կուլտուրական շինարա-



րության բնագավառում զգալի հաջողությունների հասավ նաև Սովետական Հայաստանը, որն արդեն բոլորում է իր գոյության հիսուն տարին:

Անցած տարին մեզ բերեց՝ երիտասարդ հանրապետության արդյունաբերական արտադրության ծավալի 11,1 տոկոս ավելացում, նոր ձեռնարկությունների ծնունդ ու հների արմատական վերակառուցում, նոր արտադրատեսակների թողարկում, էլեկտրաէներգետիկայի, մեքենաշինության, առանձնապես սարքաշինության, ռադիոէլեկտրոնիկայի և շինանյութերի արդյունաբերության մեծ առաջընթաց, աշխատանքի արտադրողականության հարատև բարձրացում, արտադրանքի ինքնարժեքի իջեցում, պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին անցած տասնյակ ձեռնարկություններ. Հրազդանի ջերմաէլեկտրակենտրոնի երրորդ ագրեգատի գործարկում, Տաթևգէսի 18 կիլոմետրանոց օժանդակ երկու թունելների միացում, երկրի գյուղատնտեսության համախառն արտադրանքի որոշակի աճ, հացահատիկի, խաղողի, բոստանային կուլտուրաների, մսի մթերման պետական առաջադրանքների անթերի կատարում, շարունակվող պայքար խոպանի, քարքարոտ տարածությունների ու աղուտների դեմ. այսպես է բնութագրվում անցած տնտեսական տարին:

Սակայն ձեռք բերված հաջողությունները, որքան էլ պերճախոս են, մեզ չեն կարող հանգստացնել, քանի որ տնտեսության որոշ ճյուղերում ունենք լուրջ թերություններ: Դա, առաջին հերթին, վերաբերում է կապիտալ շինարարությանը, որի պլանը կատարվել է միայն 84 տոկոսով: Մեզ անհանգստացնում է նաև այն հանգամանքը, որ թերակատարվեցին կարտոֆիլի, մրգերի, շաքարի ճակնդեղի, խորդենու, կաթի, ձվի, բրդի, բժոժի մթերման պլանները:

1969 թվականին հայ ժողովուրդը շուքով ու հանդիսավորությամբ տոնեց հայ մեծ բանաստեղծ, ժողովուրդների եղբայրության հանճարեղ երգիչ Հովհաննես Թումանյանի ծննդյան 100-ամյակը: Պոեզիայի, արվեստի տոնի վերածված այդ տոնախմբությանը մասնակցեցին սովետական մեծ տան բոլոր զավակները, մեր երկրի բոլոր ժողովուրդները, որոնց կուսակցությունը դաստիարակել ու դաստիարակում է սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո և սովետական ժողովուրդների եղբայրության ոգով:

Երաժշտության փառատոնի վերածվեց հայ ժողովրդի մյուս երախտավոր զավակի՝ անմահ Կոմիտասի ծննդյան 100-ամյակի տոնակատարությունը, որը վերստին վկայեց, թե որքան թանկ են իսկական արվեստի գանձերը մեր երկրի բոլոր ժողովուրդների համար:

Կուլտուրայի աշխատողների հանրապետական առաջին համագումար. հայ արվեստի տասնօրյակ եղբայրական Մոլդավիայում. գիտական միությունների միջազգային խորհրդի գործկոմի երևանյան նստաշրջան՝ գիտական միությունների միջազգային խորհրդի պրեզիդենտ, ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանի ղեկավարությամբ. կոլտնտեսականների հանրապետական համագումար, որը նոր ուժով ցուցադրեց գյուղի ամբողջ աշխատավորության սերտ համախմբվածությունը հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, մեծ Լենինի նշած ուղիով անշեղորեն ընթանալու, իր վաստակները մեծացնելու նրա միահամուռ պատրաստակամությունը. Հայկական ՍՍՀ գիտության օրեր Մոսկվայում. Մասիսի և Աբովյանի շրջանների աշխատավորների նախաձեռնությամբ ծնունդ առած և հանրապետությունում լայնորեն արձագանք գտած լենինյան զեկույցներ, որոնք մեծ առաջնորդի ծննդյան 100-ամ-

յակի առթիվ հանրագումարի են բերում սովետական իշխանության տարիների կատարված վիթխարի աշխատանքի արդյունքները, վերածվում երախտիքի խոսքի՝ մեր բոլոր հաջողությունների ոգեշնչող ու կազմակերպող կոմունիստական կուսակցության նկատմամբ. Հայկական ՍՍՀ VII գումարման Գերագույն սովետի 6-րդ սեսիա, որը հաստատեց հանրապետության տնտեսական ու կուլտուրական առաջընթացի՝ հնգամյակի վերջին տարվա ծրագիրը՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1970 թվականի պետական պլանի մասին» օրենքը— ահա այն իրադարձությունները, որոնցով մեր հանրապետությունում նշանավորվեց 1969 թվականը:

Այո, երևելի էր անցած տարին: Սակայն սովետական ժողովուրդը, որը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հասել է Հոկտեմբերի և սոցիալիզմի հաղթանակին, ձեռք բերածով երբեք չի հանգստանում: Նա կրկնապատկված եռանդով շարունակում է պայքարը կոմունիստական շինարարության նորանոր հաջողությունների, նոր բարձունքների գրավման համար. սովետական ժողովուրդը կոմունիզմի կառուցման գործին ձեռնամուխ է լինում խորապես կշռադատված, գիտականորեն հիմնավորված հեռանկարային պլաններով:

1970 թվականին մեր հայրենիքի քայլերը կչափվեն այսպիսի մեծություններով:

Գիտության և տեխնիկայի հետագա զարգացում, որը կնպաստի աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացմանը: Արդյունաբերության մեջ այդ աճն անցած տարվա 4,4 տոկոսից այս տարի կհասնի 5,2, շինարարության մեջ՝ 2,5—6,3, տրանսպորտում՝ 2,2—3,6 տոկոսի: Մեր ազգային եկամուտը կավելանա 6 տոկոսով:

Ընթացիկ հնգամյակում կապահովվի բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտների 32,5 տոկոս աճ (նախորդ հնգամյակում այդ թիվը կազմել է 19 տոկոս): Հնգամյակում բանվոր ծառայողների աշխատավարձը կբարձրանա առնվազն 20 տոկոսով, իսկ կոլտնտեսականների աշխատավարձի ամսական միջին գումարը՝ 35—40 տոկոսով:

1970 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալը կընդլայնվի 6,3 տոկոսով: Հայրենիքը կստանա 740 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 350 միլիոն տոննա նավթ, 195,8 միլիարդ խորանարդ մետր գազ, 618 միլիոն տոննա ածուխ, 115 միլիոն տոննա պողպատ, 922 հազար ավտոմեքենա, 456,4 հազար տրակտոր: Նախատեսվում է հանքային պարարտանյութերի արտադրության 26 տոկոս աճ, գյուղատնտեսության համախառն արտադրանքի 8,5 տոկոս ավելացում: Շրջանառության մեջ կդրվեն 300 հազար հեկտար ոռոգելի, 814 հազար հեկտար ցամաքեցված և մոտ 6 միլիոն հեկտար ջրարբիացված տարածություններ:

Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին մեր երկրում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կկազմի 76,5 միլիարդ ռուբլի:

Իսկ որո՞նք են հնգամյակի ավարտական տարում՝ 1970 թվականին մեր հանրապետության ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագծերը:

Հայաստանի արդյունաբերական արտադրության համար նախատեսված է վերջին տարիների ամենաբարձր պլանային աճը՝ 13,6 տոկոս: Դա նշանակում է, որ հանրապետության արդյունաբերությունն արդյունաբերական ար-



տադրության ծավալով ավելի քան 180 անգամ կգերազանցի նախահեղափոխական մակարդակը: Իսկ որքան մեծ խորհուրդ կա այն փաստի մեջ, որ ընդամենը 5 ժամում մեզ մոտ կարտադրվի այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրվել է ամբողջ 1913 թվականին: Սովետական Հայաստանի էներգետիկ ռեսուրսների մեծացման գործում հսկայական դեր կխաղա Տաթևի հիդրոէլեկտրակայանի և Հրազդանի ջերմաէլեկտրակայանի առաջին հզոր ագրեգատի գործարկումը:

Էլեկտրաէներգիայի նկատմամբ հանրապետության ժողովրդական տնտեսության ընթացիկ տարվա պահանջարկը սահմանված է 6 միլիարդ 850 միլիոն կիլովատ-ժամ:

Առաջընթաց նոր քայլ կկատարի մեծ քիմիան:

Հանքային պարարտանյութերի թողարկումն ավելանալու է 2,2, սինթետիկ ամոնիակինը՝ 1,5, կարբամիդինը՝ 3,9 անգամ: Զարգացում կստանա քիմիական արդյունաբերության ազգակից հեռանկարային այնպիսի ճյուղ, ինչպիսին միկրոկենսաբանական արդյունաբերությունն է. Չարենցավանում արդեն կառուցվում է սննդի համար բյուրեղային լիզինի, իսկ Աբովյանում՝ բակտերիալ պատրաստուկների փորձա-արտադրական գործարան:

Հանրապետության ծանր արդյունաբերության հնագույն ճյուղի՝ գունավոր մետալուրգիայի զարգացման գործում կարևոր ավանդ կլինեն Հրազդանի խոշորագույն լեռնաքիմիական կոմբինատի առաջին հզորությունների գործարկումը և տեխնիկապես մաքուր երկաթ արտադրող փորձնական գործարանի շինարարությունը Երևանում՝ մի ձեռնարկություն, որին հումքի պաշարներ կմատակարարի Հրազդանի երկաթի հանքավայրը:

Խոշոր քայլ կկատարվի մեքենաշինության զարգացման ասպարեզում: Մեր արդյունաբերության ամենաբազմազան և զարգացած այդ ճյուղի արդյունաբերական արտադրանքի ծավալը աճելու է 13,5 տոկոսով: Հիմնական խնդիրը նոր, տեխնիկապես կատարյալ մեքենաների ու սարքավորումների յուրացումն ու թողարկումն է, որակի բարձրացումը: Կավելանա փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչների, ուժային տրանսֆորմատորների, բարձրավոլտ ապարատների, կաբելային իրերի, մետաղամշակման ու ալմաստի գործիքների, մետաղահատ հաստոցների, մարդատար վերելակների արտադրությունը:

Հանրապետությունում բուռն թափով զարգացող շինարարության պահանջները բավարարելու համար պլանավորված է ցեմենտի արտադրության 31 տոկոս աճ: Որմնանյութերի արտադրությունը կավելանա 15,1, գեղազարդող սալիկներինը՝ 25, երկաթբետոնյա իրերինը՝ 14 տոկոսով: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման տեմպերը կբնութագրվեն հետևյալ ցուցանիշներով. անտառային և փայտամշակման արդյունաբերությունը՝ 18 տոկոս, թեթև արդյունաբերությունը՝ 10, սննդի արդյունաբերությունը՝ 15,5 և տեղական արդյունաբերությունը՝ 19,7 տոկոս:

1970 թվականը իրենց անելիքների խոր գիտակցությամբ են թևակոխում մեր հանրապետության գյուղի աշխատավորները: Նրանցից շատ ջանքեր են պահանջվելու, որպեսզի արտադրության ըստ ամենայնի կազմակերպմամբ, ապահովվի բանջարեղենի արտադրության 35, խաղողի՝ 13, կարտոֆիլի՝ 18, կաթի՝ 10 տոկոսի աճ և պտղի կրկնապատիկ ավելացում: Պլանավորված է ջրովի հողատարածությունները ընդարձակել 8 հազար հեկտարով, նոր պտղատու այգիներ հիմնել 2800 հեկտարի վրա:

Գյուղատնտեսության զարգացման համար նախատեսված են 89.6 միլիոն ռուբլու պետական կենտրոնացված կապիտալ ներդրումներ՝ 1969 թվականից 17,9 տոկոսով ավելի: Դրանց նպատակային ու արդյունավետ օգտագործումն առավել կամրապնդի կոլտնտեսությունների ու սովխոզների նյութատեխնիկական բազան: Հանրապետության գյուղատնտեսությանը կտրամադրվեն 1452 տրակտոր, 1050 բեռնատար ավտոմեքենա, հացահատիկի 100 կոմբայն, 200 էքսկավատոր և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու մեխանիզմներ: Հանքային պարարտանյութերի արտադրությունը կավելանա 20 տոկոսով և կհասնի 250 հազար տոննայի: Կապիտալ ներդրումներից, ինչպես նախորդ տարիներին զգալի միջոցներ կհատկացվեն ջրատնտեսական շինարարությանը: Չէ՞ որ ապահովվելու է 8 հազար հեկտար նոր հողերի ոռոգումը և 29 հազար հեկտար արոտների ջրարբիացումը, շարունակվելու է Արզնի-Շամիրամի երկրորդ հերթի, Ախուրյանի Աջափնյա ջրանցքի, Որոտանի ու Քասախի ոռոգման սիստեմների շինարարությունը, սկսվելու է Արաքս գետի ձախ ափի պատնեշավորման աշխատանքը:

Ուշադրության կենտրոնում կգտնվի ժողովրդի բարեկեցության բարձրացումը: Այս տարի բոլոր տեսակի հատկացումների հաշվին կկառուցվեն մեկ միլիոն 200 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ: Կենցաղային սպասարկման ծավալն ընդլայնվելու է 16.7 տոկոսով, ըստ որում մեծ ուշադրություն է նվիրվելու գյուղական բնակչության պահանջմունքների բավարարմանը: Ժողովրդական կրթության, կուլտուրայի և առողջապահության զարգացման աճի պահանջները բավարարելու նպատակով կկառուցվեն և օգտագործման կհանձնվեն 32 հազար աշակերտական տեղով դպրոցական նոր շենքեր, 7200 տեղով մանկապարտեզներ և մանկամսուրներ: Մասսայական գրադարանների թիվը կավելանա 16, կուլտուր-լուսավորական հիմնարկություններինը՝ 40 միավորով: Հիվանդանոցային մահճակալների թիվը կաճի 7,5 տոկոսով: Այս թվերը մեր հետագա հաջողությունների ցուցանիշներն են, վերելքի աստիճանները:

Լենինյան հոբելյանական տարում է՛լ ավելի կբարձրանա աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվությունը, նոր թափ կստանա մեր ժողովրդի աշխատանքային ստեղծագործական եռանդը, է՛լ ավելի կբարձրանա նրա հասարակական-քաղաքական ակտիվությունը, գաղափարական-մշակութային կյանքը կհարստանա բարձրարժեք գործերով: Հոբելյանական տարում մեծ անելիքներ ունեն կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, մեր ամբողջ հասարակայնությունը: Անհրաժեշտ է մոբիլիզացնել բոլոր ուժերը, հնարավորությունները՝ արժանավայել դիմավորելու առաջնորդի հոբելյանը: Լենինյան տարելիցը լուրջ քննություն է սովետական ժողովրդի համար:

Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակի առթիվ անցյալ տարվա դեկտեմբերի 23-ին հրապարակված ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները կոչված են նոր թափ հաղորդելու մեծ առաջնորդի վեհ գաղափարների առավել խոր արմատավորման, մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության ծավալման և մեր ժողովրդի առջև ծառացած պատմական խնդիրների հաջող լուծմանը:



Որպես լենինյան գաղափարական հարուստ ժառանգության ճշմարտացի գնահատման կարևորագույն փաստաթուղթ, թեզիսները հանդիսանալու են կուսակցական, կոմերիտական, արհմիութենական և պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների գաղափարական բնագավառում տարվող աշխատանքների առանցքը, մեծ առաջնորդի ու նրա կուսակցության փառավոր գործունեության սպառիչ լուսաբանման ուղեցույցը:

Աշխատել, գործել, սովորել լենինաբար, դա նշանակում է կոմունիստական վերաբերմունք ունենալ գործի, հասարակության հանդեպ, բարոյական բարձր հատկանիշներ ցուցաբերել մարդկային հարաբերություններում ու կենցաղում, անհաշտ պայքար մղել մեր առաջընթացը արգելակող խոչընդոտների, հակահասարակական երևույթների, հին ապրելակերպի մնացուկների դեմ:

1970 թվականին սովետական ժողովուրդը նշելու է ֆաշիզմի դեմ տարած պատմական հաղթանակի 25-րդ տարեդարձը: Այս տարի հոբելյանական է նաև հայ ժողովրդի համար. լրանում է Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակը: Այս նշանակալից իրադարձությունները հայրենասիրական, աշխատանքային մեծ խանդավառություն են առաջ բերել հանրապետության քաղաքներում ու գյուղերում, մեր հասարակայնության լայն շրջաններում: 1970 թվականը հնգամյակի ավարտական տարին է, կոմունիզմի կառուցման հերթական բնագծի հանրագումարային փուլը: Այն մեր առջև դնում է նոր խնդիրներ, նոր պահանջներ:

«Կոմունիստական շինարարության ուղիներում,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— մեզ, Լենինի խոսքերով ասած, սպասում է վիթխարագույն աշխատանք, կպահանջվի շատ ավելի ճիգ ու ջանք գործադրել, քան մինչև օրս: Կյանքը դնում է նոր խնդիրներ ու պրոբլեմներ, որոնք պահանջում են խոր ուսումնասիրություն և ստեղծագործական լուծումներ: Հաջող առաջընթացի երաշխիքն է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը: Լենինյան ուղիով, կուսակցության ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը հասավ հոկտեմբերի և սոցիալիզմի հաղթանակին: Լենինյան ուղիով մենք գնում ենք և կհասնենք կոմունիզմին»:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Մ. Ս. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

## ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԿՅԱՆՔԻ ՕՐԵՆՔԸ

*Անցյալ տարվա նոյեմբերի վերջերին Մոսկվայում տեղի ունեցած կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը խոշոր իրադարձություն հանդիսացավ մեր երկրի գյուղացիության, ամբողջ սովետական ժողովրդի կյանքում։ Կոլտնտեսականների երրորդ համագումարը կայացավ նշանավոր տարեթվի՝ աշխատավորության առաջնորդ և ուսուցիչ, աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակի նախապատրաստության օրերին։*

*Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարին ողջույն հղեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը։ Համագումարում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, «Կոլտնտեսության օրինակելի նոր կանոնադրության մասին» զեկուցեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ Դ. Ս. Պոլյանսկին։ Կոլտնտեսականների համաժողովը ընթացավ ՍՄԿԿ XXIII համագումարի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումները անթերի կենսագործելու նշանաբանով։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, երբ բոլշևիկների կուսակցության առջև ծառացան այնքան հրատապ ու բազմապիսի տնտեսական պրոբլեմները, Լենինը բազմակողմանիորեն մշակեց սոցիալիզմի կառուցման հոյակապ պլանը։ Այդ պլանի բաղկացուցիչ մասերից էր գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը։ Վլադիմիր Իլյիչը գտնում էր, որ գյուղի կյանքում արմատական փոփոխություններ կարելի է կատարել միայն գյուղացիական մանր տնտեսությունների կոոպերացման հիման վրա։*

*Կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն կենսագործելով գյուղատնտեսության կոոպերացման լենինյան պլանը, սովետական գյուղը տարավ նոր, սոցիալիստական ուղիով։ Բայց հարթ ճանապարհով չի ընթացել գյուղի վերափոխումը։ Դրա համար հարկ եղավ հաղթահարելու գյուղացու մանր սեփականատիրական հոգեբանությունը, բոլշևիկյան անհաշտ պայքար մղել բոլոր տեսակի օպորտունիստական գաղափարախոսությունների, պրակտիկայում կոլտնտեսային շինարարության ամեն տեսակի խեղաթյուրումների դեմ։ Համատարած կոլեկտիվացման հիման վրա վերացվեց շահագործողների մեծաթիվ դասակարգը՝ կուլակությունը։ Գյուղի վերափոխման համար մղվող պայքարում հաղթանակեց կուսակցության լենինյան գիծը։ Մեր երկրում ստեղծվեցին խոշոր, ժամանակակից տեխնիկայով զինված, կազմակերպչորեն կայուն, տնտեսապես ամուր, բարձր ապրանքայնությամբ հանրային տնտեսություններ։ Բավական է ասել, որ յուրաքանչյուր կոլտնտեսությանը միջին հաշվով ընկնում է ավելի քան 6000 հեկտար գյուղատնտեսական հող, իսկ երկրի կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը կազմում են գրեթե 53 միլիարդ ռուբլի։ Բոլոր կոլտնտեսությունների համախառն արտադրանքը 1964 թ. եղել է 15,1 միլիարդ ռուբլի, իսկ 1968 թվականին՝ 21,2 միլիարդ ռուբլի։*

*Սովետական Միությունում սոցիալիստական հզոր արդյունաբերության ստեղծումը հնարավորություն տվեց արմատապես վերափոխել և ամրապնդել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան։ Լենինը երազում էր սովետական գյուղում ունենալ հարյուր հազար տրակտոր։ Կոմունիստական կուսակցությունը կենսագործելով Վլադիմիր Իլյիչի պատգամները, իրականություն դարձրեց առաջնորդի կանխագծումները։ Միայն անցյալ տարվա հունվար-նոյեմբեր ամիսներին երկրում արտադրվել է 401 հազար տրակտոր, հացահատիկ կոմբայն, մոտ 42 միլիոն տոննա (պայմանական միավոր) հանքային պարարտանյութ։* 

*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի ձեռնարկած միջոցառումներից հետո ընկած ժամանակամիջոցում երկրում արագ տեմպերով ավելանում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու մթերումները։ Վերջին չորս տարվա ընթացքում գյուղատնտեսության համախառն արտադրանքը, նախորդ չորս տարիների համեմատությամբ, ավելացել է 18 տոկոսով։*

*Այդ տարիների ընթացքում մեր հանրապետությունում ևս գյուղատնտեսությունը նկատելի հաջողությունների է հասել։ Կոլտնտեսություններում և սովխոզներում գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրության միջին տարեկան աճը կազմեց 19,5 տոկոս. կարտոֆիլի արտադրությունն ավելացավ 17 տոկոսով, բանջարեղենինը՝ 50, բոստանային կուլտուրաներինը՝ 75, խաղողինը՝ 26, պտուղներինը՝ 61 տոկոսով։ Ավելացել է նաև հացահատիկի և բուսաբուծության մյուս մթերքների արտադրությունը։ Որոշակի հաջողություններ է ձեռք բերվել նաև հանրային անասունների գլխաքանակի աճի և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման բնագավառում։ Այսօր Հայաստանի հանրային դաշտերում աշխատում են մոտ 8700 տրակտոր, ավելի քան 2000 կոմբայն և 8000 ավտոմեքենա։*

*Գյուղի արտադրաուժերի աճը, կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդումն ու զարգացումը ապահովեցին կոլտնտեսային գյուղացիության նյութական բարեկեցության ու կուլտուրայի բարձրացումը, կենցաղի բարելավումը։ Մեծապես աճել են կոլտնտեսականների ռեալ եկամուտները։ Նրանք այժմ ստանում են աշխատանքի երաշխավորված վարձատրություն, ապահովվում են կենսաթոշակներով և այլ նպաստներով։ Պատմության գիրկն է անցել տարրական հարմարություններից զուրկ, անհրապույր խրճիթներով գյուղը։ Պետության ներդրած խոշոր միջոցների, հանրային տնտեսություն-*

ների, կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների եկամուտների աճի շնորհիվ արտադրական օբյեկտների շինարարության հետ միասին լայն ծավալ է ստացել դպրոցների, հիվանդանոցների, ակումբների և բնակարանային շինարարությունը։ Բավական է ասել, որ միայն վերջին տասը տարում մեր հանրապետության գյուղերում կառուցվել են 255 դպրոց, 50 հիվանդանոց, 110 ակումբի շենք, ավելի քան 150 հազար անձնական բնակարաններ։

Անդրադառնալով մեր երկրի գյուղացիության կյանքում տեղի ունեցած քաղաքական, տնտեսական ու սոցիալական փոփոխություններին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարում արտասանած ճառում ընդգծեց. «Դժվար է գերագնահատել կոլտնտեսային կարգի պատմական վիթխարի դերը սովետական գյուղացիության և մեր ամբողջ երկրի ճակատագրում։

Քաղաքական տեսակետից կոլտնտեսային կարգը ամրապնդեց սովետական պետությունը և նրա գլխավոր հիմքը՝ բանվորների և գյուղացիների դաշինքը, ռեալ պայմաններ ապահովեց, որպեսզի գյուղացիները մասնակցեն հանրային արտադրության կառավարմանը, համապետական գործերի տնօրինմանը։

Տնտեսական տեսակետից կոլտնտեսային կարգը սոցիալիզմին և կոմունիզմին ի սպաս դրեց խոշոր արտադրության առավելությունները, հնարավորություն ընձեռեց գյուղատնտեսությունը զարգացնելու ժամանակակից ինդուստրիայի հիմքի վրա։

Սոցիալական տեսակետից կոլտնտեսային կարգը ոչ միայն աշխատավոր գյուղացիությանը փրկեց շահագործումից և աղքատացումից, այլև հնարավորություն ընձեռեց գյուղում հաստատելու հասարակական հարաբերությունների նոր սիստեմ, որոնք տանում են դեպի սովետական հասարակարգում դասակարգային տարբերությունների լիակատար հաղթահարում»։ Կոլտնտեսային կարգը իր քննությունը բռնեց Սովետական Միության համար ստեղծված ամենածանր փորձությունների՝ Հայրենական մեծ պատերազմի տարիներին։

Մեր երկրում կոլտնտեսային կարգի հաղթանակի գործում վճռական դեր կատարեց բանվոր դասակարգը, որը հանրային տնտեսությունների ստեղծման ու ամրապնդման ամենածանր տարիներին նյութական, բարոյական մեծ օգնություն ցույց տվեց գյուղի աշխատավորությանը։ Այժմ ավելի է ամրապնդվել բանվորա-գյուղացիական լենինյան դաշինքը։

Այլ է գյուղացիության, մանր տնտեսատիրոջ ճակատագիրը կապիտալի աշխարհում, ուր դաժան մրցությունը քայքայում, ընչազուրկ է դարձնում նրանցից շատ շատերին։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում վերջին 18 տարում քայքայվել են 2 միլիոն 600 հազար ֆերմերներ։ ԳՖՀ-ում այդ նույն ժամանակաշրջանում գյուղացիական տնտեսությունների թիվը կրճատվել է գրեթե 600 հազարով, Իտալիայում՝ 1961—67 թվականներին տարեկան միջին հաշվով քայքայվել են 67 հազար գյուղացիական տնտեսություններ։

Սովետական գյուղի սոցիալիստական պրակտիկան վաղուց է ստացել միջազգային ճանաչում, այն տարբեր ձևերով իրականություն է դարձել սոցիալիստական համագործակցության երկրներում։

Բուլղարիայի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Տոդոր Ժիվկովը ասում է. «Ինչո՞վ բացատրել կոոպերատիվ կարգի արագ և հաջող հաղթանակը մեր երկրում։ Առաջին հերթին հարկավոր է ընդգծել, որ մեր կուսակցությունը տեսականորեն հենվեց լենին-



յան կոոպերատիվ պլանի և մանր գյուղացիական տնտեսությունները սոցիալիստականի վերափոխելու ՍՍՀՄ կոլտնտեսային շինարարության փորձի վրա»։

Կոլտնտեսականների համամիութենական առաջին (1933 թ.), երկրորդ (1935 թ.) համագումարներից հետո երրորդ համագումարը պատմական նշանակալից փուլ հանդիսացավ մեր երկրի կոլտնտեսային շարժման մեջ։ Իրականացված են հարվածային կոլտնտեսականների երկրորդ համագումարում ընդունված գյուղատնտեսական արտելի կանոնադրությունում առաջադրված խնդիրները։ Ամրապնդվել են կոլտնտեսությունները, գյուղում վերացել են կարիքն ու հետամնացությունը, աշխատավորությունը ապրում է ունևոր ու կուլտուրական։ Սակայն այդ կանոնադրությունում շարադրված որոշ դրույթներ չեն համապատասխանում գյուղատնտեսության արտադրաուժերի զարգացման այժմյան մակարդակին, գյուղի հասարակական հարաբերությունների ներկայիս բնույթին։ Հաշվի առնելով այդ, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ համարեց մշակել կոլտնտեսության օրինակելի կանոնադրության նախագիծ և ներկայացնել ընդհանուր քննարկման։

Կոլտնտեսության օրինակելի կանոնադրության նախագիծը անցյալ տարվա ապրիլին հրապարակվեց մամուլում և դարձավ համաժողովրդական քննարկման առարկա։ Նախագծի քննարկմանը մասնակցեցին տասնյակ միլիոնավոր մարդիկ, որոնք ժողովներում, մամուլի ու ռադիոյի միջոցով արին իրենց դիտողություններն ու առաջարկությունները։

Կոլտնտեսության օրինակելի կանոնադրության նախագիծը քննարկման լայն առարկա դարձավ նաև մեր հանրապետությունում։ Այն քննարկվեց կոլտնտեսությունների ընդհանուր, կոլտնտեսականների ներկայացուցիչների շրջանային ժողովներում, ինչպես նաև բանվորների, պետական հիմնարկների աշխատողների, հասարակական կազմակերպությունների ժողովներում, մամուլի էջերում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։ Այն քննարկվեց նաև կոլտնտեսականների հանրապետական համագումարում։ Հազարավոր կոլտնտեսականներ, բանվորներ, ծառայողներ, մտավորականներ միահամուռ հավանություն տալով կանոնադրության նախագծին, միաժամանակ արեցին իրենց առաջարկություններն ու դիտողությունները։

Նախահամագումարյան քննարկումների ընթացքում, համագումարում պատգամավորների ելույթներում և ընդունված փաստաթղթերում գոհունակությամբ նշված են կոլտնտեսության օրինակելի նոր կանոնադրության բնորոշ գծերն ու առանձնահատկությունները։

Համագումարի պատգամավորները ջերմ հավանություն տվին կանոնադրության նախագծի դրույթներին, նրա մեջ տեսնելով գյուղի աշխատավորության նկատմամբ կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ուշադրության ու հոգատարության նոր, վառ դրսևորումը։

Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարի ընդունած կոլտնտեսության օրինակելի կանոնադրությունը ելնում է լենինյան այն դրույթից, որ կոլտնտեսությունը սոցիալիստական, հանրային տնտեսություն է, որտեղ կամավոր հիմունքներով միավորվել են գյուղացիները։ Կոլտնտեսության անդամներն իրենք են տնօրինում տնտեսության ունեցվածքը, արտադրած մթերքները, ուղղություն տալիս կոլտնտեսության գործունեությանը՝ ելնելով սովետական իշխանության օրենքներից, կուսակցության ու կառավարության որոշումներից, պետության, կոլտնտեսության ու կոլտնտեսականնե-

տրտացոլված է
րի շահերից: Կոլտնտեսության նոր կանոնադրությունում
մեր կուսակցության կուրսը՝ արագացնելու սոցիալիստական գյուղատնտեսու-
թյան զարգացման տեմպերը, է՛լ ավելի բարձրացնելու կոլտնտեսային գյու-
ղացիության ակտիվությունը կոմունիստական շինարարության մեջ, բարե-
կեցիկ, կուլտուրական դարձնելու գյուղի աշխատավորության ապրելակերպը:
Կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրությունը, որը հաստատվեց
ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի կողմից, դար-
ձավ կոլտնտեսային կյանքի հիմնական օրենքը: Այն մեր երկրում սոցիա-
լիստական դեմոկրատիայի հետևողական զարգացման, նրա խոր ժողովրդա-
կան բնույթի, անվիճելի առավելությունների վառ վկայությունն է:
Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը որոշում
ընդունեց շրջաններում, մարզերում, երկրամասերում, հանրապետություննե-
րում և կենտրոնում կոլտնտեսությունների ընտրովի խորհուրդներ ստեղծելու
մասին: Այդ խորհուրդներն իրենց գործունեությամբ կնպաստեն կոլտնտեսա-
յին կարգի հետագա զարգացմանը, կընդհանրացնեն կոլտնտեսային արտա-
դրության կազմակերպման փորձը՝ ավելի լրիվ օգտագործելու հանրային ար-
տադրության ռեզերվները: Համագումարի կարևոր փաստաթղթերից է կոլ-
տնտեսականների սոցիալական ապահովագրության մասին որոշումը, որի
համար կոլտնտեսությունների միջոցներից մասհանումների միջոցով ստեղծ-
վելու է կենտրոնացված ֆոնդ: Նախատեսվում է 1970 թվականի հունվարի
1-ից կոլտնտեսականներին սոցիալական ապահովագրման ենթարկել ընդհա-
նուր կարգով, որը մեծ չափով կնպաստի նրանց բարեկեցության բարձրաց-
մանը:
Հողատարությունը գյուղատնտեսության անընդհատ զարգացման և սո-
վետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման նկատմամբ եղել և
գտնվում է կոմունիստական կուսակցության, սովետական կառավարության
ուշադրության կենտրոնում: Գյուղատնտեսությունը ինտենսիվացնելու համար
ստեղծվել են անհրաժեշտ պայմաններ:
Գյուղատնտեսության արտադրության ուսումնասիրությունը ցույց է տա-
լիս, որ մեր հանրապետության բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ
անբավարար են օգտագործում արտադրամիջոցները և գյուղատնտեսության
արտադրության ինտենսիվացման համար ստեղծված հնարավորությունները.
որի հետևանքով դեռևս ցածր մակարդակի վրա է գտնվում գյուղատնտեսա-
կան կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը:
Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարում այդ-
պիսի վիճակի գլխավոր պատճառը համարվեց շատ կոլտնտեսությունների և
սովխոզների կողմից գյուղատնտեսության հիմնական արտադրամիջոցի՝ հողի
դեռևս անբավարար օգտագործումը:
Համագումարում ամենայն խստությամբ նշվեց, որ անհրաժեշտ է խնամ-
քով պահպանել հողը և ամեն կերպ բարձրացնել դրա բերրիությունը, հողա-
տարածությունների ամեն տեսակ փչացում պետք է դիտել որպես հակահասա-
րակական երևույթ: Նկատի ունենալով, որ մեր հանրապետությունը խիստ
սակավահող է և յուրաքանչյուր բնակչին ընկնում է ավելի քիչ տարածություն,
քան միջին հաշվով Միության մեջ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հան-
րապետության Մինիստրների սովետը վերջին ժամանակաշրջանում մի շարք
միջոցներ են ձեռնարկել օգտագործելի հողատարածությունների ընդարձակման
համար: Տասը տարում (1959—69 թթ.) իրացվել և օգտագործելի են դարձել



ավելի քան 20 հազար հեկտար զուր, ձեռնարկված են մերձարաքսյան հողերի
աղազերծման աշխատանքները և արդեն մշակելի է դարձել առաջին հազար
հեկտարը:
Շամշադինի, Իջևանի, Նոյեմբերյանի և մյուս շրջանների շատ կոլտնտե-
սություններում ու սովխոզներում ձեռնարկվել են թեք տարածությունների
դարավանդավորման աշխատանքները, որոնք նույնպես հնարավորություն են
տալիս ավելացնելու օգտագործելի հողատարածությունները:
Սակայն, դրանց հետ միասին հանրապետությունում լուրջ թերություններ
կան ինչպես հողատարածությունների պահպանման, այնպես էլ նրանց ռա-
ցիոնալ օգտագործման բնագավառում: 1966—68 թթ., այսինքն երեք տարում,
հանրապետության օգտագործելի հողատարածությունները նվազել են 19000
հեկտարով, որից մոտ 2900 հեկտար վարելահողեր են: 1968 թվականին Արա-
րատյան դաշտի շրջաններում ճահճակալման հետևանքով անօգտագործելի
մնաց 265 հեկտար ջրովի տարածություն: Անցյալ տարի Աբովյանի, Ազիզբե-
կովի, Սիսիանի, Գորիսի, Ապարանի, Աշտարակի և մյուս շրջանների կոլտըն-
տեսություններում ու սովխոզներում չմշակվեց մոտ 30 հազար հեկտար վարե-
լահողեր: Անցյալ տարվա տաս ամսում ոչ գյուղատնտեսական նպատակների
համար հատկացվել է 642 հեկտար վարելահողեր և 121 հեկտար բազմամյա
տնկարքների տարածություններ: Դրանց մեծ մասը դրվել են գործարանների,
բնակելի շենքերի, ճանապարհների և այլ օբյեկտների շինարարության տակ:
Մենք պետք է բոլոր հնարավոր միջոցների դիմենք, որպեսզի արդյունաբերա-
կան օբյեկտների կառուցումն ու քաղաքային շինարարությունը առավելապես
կատարվեն ոչ թե մշակվող, արգավանդ հողատարածությունների, մանավանդ
ջրովի հողերի, խաղողի և պտղատու այգիների տարածությունների, այլ ան-
օգտագործելի հողատարածությունների վրա, որը կազմում է հանրապետու-
թյան տերիտորիայի ավելի քան 55 տոկոսը: Շատ կոլտնտեսություններում և
սովխոզներում հսկայական տարածություններ է հատկացվում տնամերձ ֆոն-
դին: Ավելին, մեր նախնիների կողմից հիմնադրված որոշ գյուղերը աստիճա-
նաբար տեղադրվում են արգավանդ հողերի վրա, որը ձեռնտու չէ:
Հողի պաշտպանությունը,— ասում է ընկեր Բրեժնևը,— մեր ամբողջ
հասարակության գործն է: Հողի ամեն մի փչացում պետք է դիտել որպես հա-
կահասարակական արարք: Ով ռտնձգություն է կատարում հողի դեմ, անփույթ
վերաբերմունք է ցույց տալիս նրան, չի բարձրացնում նրա բերրիությունը,
նա խարխլում է ժողովրդի բարեկեցության նյութական նախահիմքը:
Հանրապետությունում լայն աշխատանք է ծավալված նոր հողերը յու-
րացնելու, ջրաշինարարության թափը ուժեղացնելու ուղղությամբ, որը հնա-
րավորություն կտա ընդարձակելու գյուղատնտեսության համար պիտանի հո-
ղատարածությունը:
Գյուղատնտեսական արտադրության հիմքը հացահատիկային տնտեսու-
թյունն է, որը վճռական ներգործություն է ունենում տնտեսության մյուս ճյու-
ղերի, մանավանդ անասնապահության զարգացման վրա: Կուսակցության
ձեռնարկած միջոցների շնորհիվ որոշակի քայլեր են կատարվել այդ ուղղու-
թյամբ: Այդ առանձնապես նկատելի է Անիի, Արթիկի, Վարդենիսի, Ստեփա-
նավանի, Թումանյանի շրջանների շատ տնտեսություններում, որոնք անջրդի
պայմաններում, վերջին տարիներս հացահատիկային ցանքատարածություն-
ներից հեկտարից միջին հաշվով ստանում են 20—25, իսկ Հոկտեմբերյանի,
Արարատի, Արտաշատի շրջանների առանձին կոլտնտեսություններ (ջրովի հո-

ղատարածություններից)՝ 45—50 ցենտներ բերք։ Բայց հանրապետությունում կան կոլտնտեսություններ, որոնք նույնիսկ ոռոգվող հողերի հեկտարից ստանում են 10—18 ցենտներ բերք (էջմիածնի շրջան)։ Դա առաջին հերթին հետևանք է այն բանի, որ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները, կուսակցական կազմակերպությունները ուշադրություն չեն դարձնում հասկավոր կուլտուրաների ցանքատարածությունների համար բերքատու սորտերի սերմերի ընտրության վրա։ Փորձը ցույց է տալիս, որ ոռոգվող հողերում «Բեզոստա—1» սորտի ցորենը մեր հանրապետությունում հեկտարից տալիս է միջինը 35—40 ցենտներ բերք, իսկ առանձին տնտեսություններում նույնիսկ 50 ցենտներ։ Բայց այդ սորտի ցանքատարածության ընդարձակմանը անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում։

Մեր հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները վերջին տարիների ընթացքում որոշ հաջողություններ են ձեռք բերել անասնաբուծության զարգացման՝ անասունների գլխաքանակի աճի և մսի, կաթի ու ձվի արտադրության ավելացման գործում։ Միայն կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը չորս տարում աճեց 26 հազար գլխով, կամ 6 տոկոս, այդ թվում կովերինը՝ 10 հազար գլխով կամ 7,5 տոկոս, ոչխարներինը՝ 11 հազար գլխով, հասակավոր թռչուններինը՝ 120 հազար գլխով։ 1966—69 թթ., 1962—65 թթ. համեմատությամբ մսի արտադրության տարեկան միջին աճը կազմեց 15 տոկոս, կաթինը՝ 8, ձվինը՝ 44 տոկոս։ Պետությանը մսի ու կաթի վաճառքի տարեկան առաջադրանքները վերջին տարիների ընթացքում կատարվում և գերակատարվում են։

Անասունների գլխաքանակի աճի, անասնաբուծական մթերքների արտադրության և պետությանը վաճառքի ավելացման գործում առանձնապես լավ ցուցանիշների են հասել Արտաշատի, Ախուրյանի, Վարդենիսի, Հոկտեմբերյանի, Ստեփանավանի, Կալինինոյի, Շահումյանի և մյուս շրջանների շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ։

Անասնաբուծության զարգացման գործում մենք կարող էինք ունենալ ավելի բարձր ցուցանիշներ, եթե ամեն մի կոլտնտեսությունում և սովխոզում լավ օգտագործվեին բոլոր նպաստավոր պայմանները և հնարավորությունները մսի, կաթի և անասնաբուծական մյուս մթերքների արտադրության ավելացման համար։ Ցավոք, որոշ կոլտնտեսություններում և սովխոզներում վերջին տարիների ընթացքում պակասել է անասունների գլխաքանակը։ 1965—68 թթ., նախորդ չորս տարիների համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը նվազել է Ղափանի, Թալինի շրջաններում, իսկ կովերի գլխաքանակը՝ Արթիկի, Աշտարակի, Ղափանի շրջաններում։ Խոզերի գլխաքանակը կրճատվել է համարյա հանրապետության բոլոր շրջանների տնտեսություններում։ Ոչխարների գլխաքանակը նկատելիորեն նվազել է Ալավերդու, Գորիսի, Գուգարքի, Իջևանի, Ղափանի, Սիսիանի և էջմիածնի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Հանրապետության շատ կոլտնտեսություններ և սովխոզներ միանգամայն անբավարար են օգտագործում մսի արտադրության ավելացման հնարավորությունները։ Բավական է նշել, որ յուրաքանչյուր տարի մայրական կազմից ստերջության պատճառով պակաս են ստացվում այնքան մատղաշներ, որոնց աճեցումը հնարավորություն կտա մսի արտադրությունը հանրապետությունում ավելացնելու մոտ 10 հազար տոննայով։ Մսի կոմբինատներն են հանձնվում ցածր քաշ և ցածր գիրություն ունեցող մեծ քանակությամբ անասուններ։ Անց-



յալ տարվա 9 ամսում մսի կոմբինատներն հանձնված յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի կենդանի միջին քաշը կազմեց 225, ոչխարինը՝ 35, իսկ խոզինը՝ 81 կիլոգրամ։ Ըստ որում խոշոր և մանր եղջերավոր անասունների մոտ մեկ քառորդը ունեցել է միջակից ցածր գիրություն։ Եթե խոշոր եղջերավոր անասունների քաշը հասցվեր թեկուզ 300 կիլոգրամի, իսկ ոչխարներինը՝ 45 կիլոգրամի, ապա նրանք կունենային միջակ և բարձր գիրություն, և տարեկան լրացուցիչ կարտադրվեր ևս տասը հազար տոննա բարձր որակի միս։

Անասնաբուծական մթերքների, մասնավորապես մսի արտադրության հետագա ավելացման համար Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի կողմից ձեռնարկվել և իրականացվում են մի շարք միջոցառումներ։ Ըստ որում լուրջ ուշադրություն է հատկացվում անասնաբուծության վաղահաս և բարձր արդյունավետ ճյուղերի՝ թռչնաբուծության, խոզաբուծության և ոչխարաբուծության հետագա զարգացման վրա։

Նկատի ունենալով կաթի արտադրության ու վաճառքի ավելացման հույժ կարևորությունը, Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն ու ՀՍՍՀ Մինիստրների սովետը նախապատրաստում են և մոտակա ժամանակում քննության կառնեն հանրապետությունում կաթնային անասնաբուծության զարգացման խնդիրները։

Մեր հանրապետության հողակլիմայական պայմանները շատ նպաստավոր են այգեգործության և բանջարաբոստանային կուլտուրաների զարգացման համար։ Անժխտելի է, որ Սովետական Հայաստանի կոլտնտեսություններն ու սովխոզներն այս բնագավառում հասել են որոշակի հաջողությունների։ Բայց այդ մեզ չպետք է հանգստացնի։ Հայաստանի կուսկազմակերպությունները և սովետական օրգանները, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներն բոլոր հնարավորություններն ունեն խելացի օգտագործելու պետության կողմից հատկացված միջոցները, ապահովելու քաղաքային բնակչությանը բանջարեղենով, իսկ սննդարդյունաբերությանը՝ հումքով։

Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը մեծ ուշադրություն նվիրեց գյուղատնտեսության ինտենսիվացման հարցին, որը կարմիր թելի պես անցնում է կոլտնտեսության օրինակելի կանոնադրության միջով։ Այդ նշանակում է գյուղատնտեսությունը վերազինել ժամանակակից առաջնակարգ տեխնիկայով, կոմպլեքսային մեքենայացման ենթարկել աշխատատար պրոցեսները, ընդարձակել ոռոգելի ցանքը, ավելի շատ հանքային պարարտանյութ տալ գյուղին։

1969 թվականի դեկտեմբերի 24-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, որը քննարկեց կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարի արդյունքները և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները, ինչպես նաև Հայկական ՍՍՀ 1970 թվականի պետական պլանի, Հայկական ՍՍՀ 1970 թվականի պետական բյուջեի նախագծերը։ Պլենումի ընդունած որոշումների կենսագործումը Հայաստանի կուսկազմակերպություններից պահանջում է լարել բոլոր ուժերը և եղած միջոցները օգտագործել հմտորեն։

Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարի որոշումների, կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրության անշեղ կենսագործումը վիթխարի նշանակություն ունեն կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունների

խնդիրն է՝ համագումարի նյութերը լայնորեն պարզաբանել գյուղի աշխատավորությանը: Այդ գործում պետք է ընդգրկել կոլտնտեսականների համամիութենական և հանրապետական համագումարների պատգամավորներին, կուսակցական, սովետական, կոմերիտական, պրոֆմիութենական աշխատողներին, պրոպագանդիստներին, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների ղեկավարներին ու մասնագետներին, գիտնականներին, գյուղի ինտելիգենցիային: Կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարի նյութերը և կոլտնտեսության օրինակելի կանոնադրության պրոպագանդան կամպանիայի բնույթ չպետք է կրի: Պրոպագանդիստական աշխատանքը պետք է սերտորեն կապվի յուրաքանչյուր կոլեկտիվի կոնկրետ խնդիրների հետ, բարձրացնի հողագործի և անասնապահի, գյուղի ողջ աշխատավորության քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, նրանց մոբիլիզացնի ապահովելու սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումը:

Արդեն ոտք ենք դրել հնգամյակի ավարտական տարին: 1970 թվականը լենինյան հոբելյանական տարի է: Անցյալ տարվա վերջերին հրապարակվեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի թեզիսները՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ: Այն քաղաքական և ստեղծագործական մեծ ակտիվություն է առաջ բերել մեր լայնածավալ հայրենիքի աշխատավորության մեջ: Յուրաքանչյուր բանվոր, կոլտնտեսական և մտավորական ձգտում է արտադրության, գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառում ձեռք բերած բարձր ցուցանիշներով դիմավորելու այդ տարելիցը:

Սովետական Հայաստանի աշխատավորների համար այս տարին նշանակալից է նաև նրանով, որ այն զուգադիպում է Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակին: Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում ծավալվում է սոցիալիստական մրցությունը՝ հնգամյակի առաջադրանքների կատարումով դիմավորելու հայ ժողովրդի վերածննդի պանծալի տոնը:

ՍՄԿԿ Կենտկոմին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը, ՍՍՀՄ Մինիստրների սովետին ուղղված նամակում կոլտնտեսականների համամիութենական երրորդ համագումարը վստահեցրեց կուսակցությանն ու կառավարությանը, որ սովետական գյուղացիությունը իր ջանքերն ու եռանդը կգործադրի ապահովելու գյուղատնտեսության արագ վերելքը: Գյուղի աշխատավորները բանվոր դասակարգի և մտավորականության հետ մեկտեղ իրենց բոլոր ուժերը, փորձն ու գիտելիքները, ստեղծագործական նախաձեռնությունը կնվիրաբերեն կոմունիստական շինարարության վեհ խնդիրների իրագործմանը:



Ա. Ս. ԼԱԼԱՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԻ ՄԱՍԻՆ

Վ. Ի. Լենինը՝ առաջին սոցիալիստական պետության ստեղծողը, տեսականորեն հիմնավորեց սովետական պետական ապարատի բնույթը, պրակտիկ ֆունկցիաները: Որպես բանվորագյուղացիական կառավարության առաջին նախագահ, նա իր գործունեության մեջ մարմնավորեց սովետական պետական գործչին բնորոշ գծերը, արտահայտեց ժողովրդի կամքը:

Սովետական պետական ապարատը պետական մարմինների համակարգ է, որի միջոցով սոցիալիստական պետությունն իրականացնում է իր ֆունկցիաները: Այդ համակարգի մեջ են մտնում իշխանության և կառավարման բարձրագույն ու տեղական, արդարադատության ու դատախազական հսկողության մարմինները:

Սովետական պետական ապարատի կառուցվածքը, նրա աշխատանքի ձևերն ու մեթոդները օրգանապես կապված են սոցիալիստական պետության զարգացման խնդիրների հետ:

Ղեկավարվելով Լենինի ցուցումներով, կոմունիստական կուսակցությունը պետական ապարատը երբեք չի դիտել որպես քարացած ու անփոփոխ հաստատություն: Վերջինի կազմակերպական կառուցվածքը, նրա գործունեության ձևերն ու մեթոդները պայմանավորված են տվյալ կոնկրետ իրադրության առանձնահատկություններով և դրանցից բխող խնդիրներով:

Սովետական պետական ապարատի ճիշտ և նպատակահարմար կառուցվածքը, նրա աշխատանքի մեթոդների բարելավումը կարևոր դեր են խաղում սոցիալիստական պետության կառավարման գործում:

Լենինը Սովետական իշխանության հերթական խնդիրները հանրահայտ աշխատության մեջ գրում է. «Համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ սոցիալիստական կուսակցությունը կարողացել է գլխավոր գծերով ավարտել իշխանությունը նվաճելու և շահագործողներին ճնշելու գործը, կարողացել է ընդհուպ մոտենալ կառավարման հարցին: Պետք է, որ մենք լինենք սոցիալիստական հեղաշրջման այդ ամենադժվարին (և ամենաշնորհակալ) խնդրի արժանավոր կատարողները: Պետք է մտածել, որ հաջող կառավարելու

համար, բացի համոզել կարողանալուց, բացի քաղաքացիական պատերազմում հաղթել կարողանալուց, անհրաժեշտ է գործնականապես կազմակերպելու կարողություն։ Սա ամենադժվարին խնդիրն է, որովհետև գործը վերաբերում է տասնյակ-միլիոնավոր մարդկանց կյանքի ամենախոր, տնտեսական, հիմքերը նոր ձևով կազմակերպելուն։ Եվ այդ ամենաշնորհակալ խնդիրն է, որովհետև միայն նրա լուծումից հետո (գլխավոր և հիմնական գծերով) կարելի կլինի ասել, որ Ռուսաստանը դարձել է ոչ միայն սովետական, այլև սոցիալիստական հանրապետություն» (Երկեր, հ. 27, էջ 287—288)։

Լենինը պահանջում էր, որ սովետական հիմնարկները գտնվեն իրենց առջև կանգնած խնդիրների բարձրության վրա, ապարատի բոլոր օղակները աշխատեն հստակ, օպերատիվ, աշխատողները լինեն գործունյա, հավատարիմ ծառայեն ժողովրդին։ «Սովետական ադմինիստրացիայի մեքենան,— սովորեցնում էր նա,— պետք է աշխատի ճշտապահորեն, ազնվաբար, արագ։ Նրա թափթփվածությունից տուժում են ո՛չ միայն մասնավոր անձանց շահերը, այլև կառավարման ամբողջ գործը ստանում է շինծու, խաբուսիկ բնույթ...» (Ленинский сборник, т. XXXIV, стр. 429);

Պետական ապարատի աշխատանքի ռացիոնալ կազմակերպումը սովետական իշխանության առաջնակարգ խնդիրներից էր։ 1922 թվականի հոկտեմբերի 31-ին Համառուսաստանյան ԿԳԿ-ի IX գումարման IV նստաշրջանում Լենինը դարձյալ անդրադարձավ պետական ապարատի աշխատանքի բարելավման հարցին, սուր քննադատեց սովետական ապարատում տեղ գտած առանձին բյուրոկրատական երևույթները, համոզմունք հայտնեց, որ սովետական իշխանության մարմինները կարող են այն վերացնել։ Նա պետական գործունեության բոլոր տարիներին բոլշևիկյան քաղաքական կուրս է անցկացրել պետական ապարատի ամրապնդման ուղղությամբ, բազմիցս ընդգծել, որ այն հեշտ ու դյուրին գործ չէ։ «Տարիներ ու տարիներ պետք է անցնեն, որպեսզի մենք հասնենք մեր պետական ապարատի բարելավմանը, նրա բարձրացմանը կուլտուրայի բարձրագույն աստիճաններին,— ո՛չ թե առանձին անձերի, այլ այդ ապարատի ամբողջ ծավալի իմաստով» (Երկեր, հ. 33, էջ 469)։

Վլադիմիր Իլյիչը ցույց է տվել, որ անհրաժեշտ է պետական ապարատի կազմակերպումը և գործունեությունը դնել գիտական հիմքերի վրա, միաժամանակ նախազգուշացրել է, որ այդ կարևոր գործում վնասակար են շտապողականությունը և սուբյեկտիվիզմը։ «Մեր պետապարատի նորոգման համար,— գրել է Լենինը,— մենք պետք է, ինչ էլ որ լինի, առաջադրենք մեզ մի խնդիր. առաջին՝ սովորել, երկրորդ՝ սովորել և երրորդ՝ սովորել ու այնուհետև ստուգել, որ մեզնում գիտությունը մեռած տառ կամ մոդայական ֆրազ չմնա (իսկ, մեղքներս ինչ թաքցնենք, մեզնում այդ առանձնապես հաճախ է լինում), որ գիտությունն իրոք միս ու արյուն դառնա, կենցաղի բաղկացուցիչ տարր՝ լիովին և իսկապես» (Երկեր, հ. 33, էջ 581)։

Լենինը նշում էր, որ պետական ապարատում բարեփոխումներ կատարելիս, նախ անհրաժեշտ է կշռադատել բոլոր հանգամանքները, գիտականորեն հիմնավորել և հետո ձեռնամուխ լինել դրանց։ Չպետք է մոռանալ նաև այն, որ «... այստեղ մենք չունենք փորձ, այստեղ մենք ստիպված ենք մեր ամեն մի քայլն ինքներս մշակել»։

Լենինի նախաձեռնությամբ երկրում ստեղծվեցին ավելի քան տասը գիտահետազոտական ինստիտուտ, որոնք զբաղվում էին պետական կառավարման գիտական կազմակերպման խնդիրներով։ Այդ ինստիտուտներից էին



բանգյուղտեսչության առընթեր կառավարման տեխնիկայի ինստիտուտը և վարչական տեխնիկայի բաժինը, արդյունաբերության կառավարման և արտադրության կազմակերպման կենտրոնական ինստիտուտը և այլն։ Դրա հետ մեկտեղ Լենինը գտնում էր, որ անհրաժեշտ է առհասարակ աշխատանքի և հատկապես կառավարման աշխատանքի կազմակերպմանը նվիրված երկու կամ ավելի դասագրքեր կազմելու համար կոնկուրս հայտարարել, ինչպես նաև «Մի քանի պատրաստված և բարեխիղճ մարդ ուղարկել Գերմանիա կամ Անգլիա՝ գրականություն հավաքելու և այդ հարցն ուսումնասիրելու համար» (Նույն տեղը, էջ 587)։

Վերհանելով կառավարման ոլորտում տեղ գտած թերությունները, Լենինը ուղիներ էր նշում նրանց վերացման համար։ Այդ կապակցությամբ նա գրել է մի շարք աշխատություններ, հոդվածներ, որտեղ հանգամանալից լուսաբանված են նոր հասարակարգի կառավարման պրոբլեմները։

Նա պատշաճ ուշադրություն էր նվիրում նաև պետական կառավարման առանձին ոլորտների և օղակների աշխատանքի կազմակերպմանը։

Պետական ապարատի կատարելագործմանն են նվիրված նաև Լենինի կյանքի վերջին տարիներին գրված մի շարք հոդվածները— Ինչպես վերակազմենք բանգյուղտեսչությունը, Լավ է քիչ, բայց լավ և այլն։ Լենինյան ցուցումները սկզբունքային նշանակություն ունեցան երկրի ժողովրդական տնտեսության և հասարակական կյանքի մյուս բնագավառները գիտական հիմունքներով ղեկավարելու գործում։ Նա իր պրակտիկ գործունեության ընթացքում հաճախ էր լինում աշխատավորների կոլեկտիվներում, լսում նրանց խորհուրդներն ու առաջարկությունները։

Լենինյան սկզբունքները առավել մեծ նշանակություն են ձեռք բերում այժմ։ Կուսակցության ծրագրում, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներում առաջ է քաշվում պետական ապարատի աշխատանքի բարելավման խնդիրը, որից մեծ չափով կախված է երկրի բոլոր ռեսուրսների ճիշտ օգտագործումը, բնակչության կուլտուր-կենցաղային վիճակի բարելավման հարցերի արագ լուծումը, երկրի պաշտպանունակության ամրապնդումը, պետական ապարատի բոլոր օղակներում սոցիալիստական օրինականության ապահովումը և այլն։

Լենինը պետական ապարատի կազմակերպական կառուցվածքի կատարելագործման և աշխատանքի բարելավման միջոցներից էր համարում աշխատավոր լայն զանգվածներին ապարատի աշխատանքներին ներգրավելը։ 1918 թվականին նա գրել է. «...մենք ունենք մի «հրաշալի միջոց», իսկույն, մի հարվածով տասնապատկելու մեր պետական ապարատը,— մի միջոց, որպիսին ո՛չ մի կապիտալիստական պետություն ո՛չ մի ժամանակ չի ունեցել իր տրամադրության տակ և ունենալ չի կարող։ Այդ հրաշալի գործը աշխատավորներին, չքավորներին պետության կառավարման ամենօրյա աշխատանքին մասնակից դարձնելն է» (Երկեր, հ. 26, էջ 120)։

Վ. Ի. Լենինը սովորեցնում է, որ միայն նա կհաղթի և իշխանությունն իր ձեռքում կպահի, ով հավատում է ժողովրդին, ով խորասուզվում է ժողովրդական կենդանի ստեղծագործության աղբյուրի մեջ։ Լենինն իր պրակտիկ գործունեության ընթացքում հաճախ էր լինում աշխատավորների կոլեկտիվներում, զրուցում շարքային մարդկանց հետ, ուշի-ուշով լսում նրանց խորհուրդներն ու առաջարկությունները։ Բնորոշ է հետևյալ օրինակը, որը ցույց է տալիս, թե նա ինչպես էր գնահատում իր հանդիպումները հասարակ մարդկանց հետ։ Մի անգամ ամերիկյան պրոգրեսիվ գրող Ալբերտ Ռիս Վիլյամսը ասա-

սում էր Լենինին՝ նրա ընդունարանում։ Հակառակ իր սովորության, Լենինն այս անգամ հանդիպման ժամը խախտեց։ Գրողը սպասելով մտածում էր, թե նա ուշանում է, ինչ որ պետական կարևոր գործի պատճառով, որը ձգձգվում է ինչ որ հատուկ կարևոր անձի՝ դիվանագետի կամ զինվորական ընդունելության պատճառով։ Գրողը մնացել էր զարմացած, երբ գրասենյակից դուրս էր եկել հասարակ գյուղացի։ Լենինը հաստատել էր, որ իրեն իրոք ուշացրել է պետական կարևոր գործը, որ այցելուն իրոք շատ կարևոր անձ է։ Ներողություն խնդրելով, Լենինն ասել է, որ նա տամբովյան գյուղացի է, որի կարծիքը պետական գործերի մասին շատ հետաքրքիր էր։

Մասսաների մասնակցությունը պետական կառավարմանը սոցիալիստական դեմոկրատիայի հատկանշական գծերից է։ Այն ապահովում է ընդունված օրենքների ու որոշումների համակողմանի քննարկումը, համընդհանուր ճանաչումը։ Աշխատավորների հասարակական-քաղաքական գործունեությունը մեծ նշանակություն է ստանում մեր օրերում։ ՍՄԿԿ ծրագիրը նշում է, որ անհրաժեշտ է ապահովել բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը (տե՛ս ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, 1961, էջ 121)։

Պետական ապարատը կատարելագործելու և քաղաքացիների պահանջները բավարարելու հարցերը արտացոլվել են կուսակցական ու պետական մի շարք փաստաթղթերում— ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թվականի օգոստոսի որոշումը Աշխատավորների բողոքների կազմակերպման և նամակների քննարկման աշխատանքի բարելավման մասին, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1968 թվականի ապրիլի 12-ի հրամանագիրը՝ Քաղաքացիների առաջարկությունները, դիմումները և գանգատները քննարկելու կարգի մասին (տե՛ս ՍՍՀՄ Գերագույն սովետի տեղեկագրեր, 1968, № 17 (1415), հոդվ. 144) և այլն։

Սովետական պետական ապարատի աշխատանքը բարելավելու համար էական են վերջինիս ճիշտ կառուցվածքը և նրա առանձին օղակների իրավասության պարզորոշ սահմանազատումը։

Ապարատի բարդությունը, նրանում ավելորդ և զուգահեռ օղակների պահպանումը ո՛չ միայն կլանում են վիթխարի նյութական ու ֆինանսական միջոցներ, թանկացնում այն, այլև ազդում նրա ճկունության, ղեկավարման օպերատիվության վրա։ Լենինը դեռևս 1922 թվականի նոյեմբերի 22-ին գրել է «Ներկա ժամանակվա ամենագլխավոր և մոտագույն տարիների համար ամենակարևոր հերթական խնդիրն է սովետական ապարատի սիստեմատիկ փոքրացումն ու էժանացումը՝ նրա կրճատման, ավելի կատարյալ կազմակերպման, քաշքշուկի, բյուրոկրատիզմի վերացման և անարտադրողական ծախսերի պակասեցման միջոցով» (Երկեր, հ. 33, էջ 529)։

Սովետական պետական ապարատի ծախսերի կրճատումը բխում է սոցիալիստական կարգի էությունից, որը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում աշխատանքային, նյութական և դրամական միջոցները արտադրողաբար օգտագործելու համար։ Սոցիալիստական պետության մեջ գործնականում իրականացվում է Մարքսի այն դրույթը, որ սոցիալիզմի ժամանակ կառավարման նպատակով ծախքերը նոր հասարակության զարգացման զուգընթաց պետք է առավել ևս կրճատվեն (տե՛ս Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, Հայպետհրատ, 1950, էջ 16)։

Պետական ապարատին ներկայացվող այդ պահանջները առավել մեծ



նշանակություն են ձեռք բերում մեր պետության զարգացման ներկա փուլում։ ՍՄԿԿ ծրագիրը նշում է, որ սովետական պետական ապարատը պետք է լինի պարզ, որակյալ, էժան ու օպերատիվ, առանց բյուրոկրատիզմի, ֆորմալիզմի և քաշքշուկի որևէ դրսևորման (տե՛ս ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, 1961, էջ 125)։

Պետական ապարատի պարզեցման և էժանացման խնդրի լուծմանն է ուղղված ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1969 թվականի հոկտեմբերի 13-ի Կառավարման ապարատի կատարելագործման և էժանացման միջոցառումների մասին համատեղ որոշումը։ Որոշման մեջ նշված է, որ կառավարման ճյուղային սկզբունքի իրականացումը, պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի կենսագործումը, ժողովրդական տնտեսության մեջ կառավարման ավտոմատ սիստեմների, էլեկտրոնային ու հաշվողական մեքենաների ավելի ու ավելի լայն կիրառումը անհրաժեշտ պայմաններ են ստեղծում կառավարման ապարատի հետագա կատարելագործման և նրա պահպանության ծախսերի կրճատման համար։

Հայտնի է, որ Լենինը վերլուծելով բյուրոկրատիզմի էությունը շահագործողական հասարակարգում, դրա մեջ տեսնում էր ոչ միայն առանձին խեղաթյուրումներ, ծայրահեղություններ, անճշտություններ, անհոգի վերաբերմունք մարդկանց նկատմամբ, ֆորմալիզմ, այլև որոշակի կազմակերպական սկզբունք, կառավարման մի ամբողջական սիստեմ։ Այդ սիստեմի բնորոշ առանձնահատկությունը նա համարում էր բյուրոկրատիայի առկայությունը մարդկանց մի խավի, որը անտագոնիստական դասակարգային հասարակարգում իր ձեռքում է կենտրոնացնում իշխանությունը և ժողովրդի հանդեպ իր համար արտոնյալ վիճակ ստեղծում։ Այդ մասին Լենինը գրել է. «Վերցնենք չինովնիկության, բյուրոկրատիայի՝ որպես կառավարման գործում մասնագիտացված և ժողովրդի հանդեպ արտոնյալ վիճակի մեջ դրված մարդկանց առանձին խավի՝ հաստատությունը։ Սկսած միահեծան կիսաասիական Ռուսաստանից մինչև կուլտուրական, ազատ և քաղաքակրթված Անգլիան, մենք ամենուրեք տեսնում ենք այդ հաստատությունը, որը կազմում է բուրժուական հասարակության անհրաժեշտ օրգանը» (Երկեր, հ. 2, էջ 432)։

Լենինը ցույց է տվել բյուրոկրատիզմի փոխադարձ սերտ ենթակայությունը շահագործողական պետությանը։ Բյուրոկրատիզմն իր էությամբ խորթ է սոցիալիզմին, սոցիալիստական պետական ապարատին։ Սակայն բյուրոկրատական բոլոր երևույթները միանգամից արմատախիլ անել հնարավոր չէ։ Սոցիալիստական հասարակարգը բարձրանում է ոչ իր սեփական հիմքերի վրա, նրա նյութական նախադրյալները ստեղծվում են դեռևս կապիտալիզմի ընդերքում։ Այդ պատճառով էլ սոցիալիզմի օրոք դեռևս պահպանվում են կապիտալիզմի մնացուկները, որոնցից է բյուրոկրատիզմը։

Կուսակցության VIII համագումարին տված Կենտկոմի քաղաքական հաշվետվության մեջ Լենինը հանգամանորեն անդրադարձել է բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի հարցին։ Նա նշել է, որ բյուրոկրատական և բուրժուական շահագործողական ապարատը, որը մնում է իբրև այդպիսին նույնիսկ բուրժուական ամենաազատ հանրապետություններում, մենք հիմնահատակ ոչնչացրել ենք, նրա բյուրոկրատական չինովնիկությունը ցրել ենք, տակնուվրա ենք արել և ապա սկսել նորից նրանց նոր տեղերում դնել։ «Ցարիստական բյուրոկրատներն սկսեցին անցնել սովետական հիմնարկները և բյուրոկրատիզմ անցկացնել, կոմունիստների գույնով ներկվել և կարիերայի առավել հա-

ջողության համար՝ ՌԿԿ անդամագրքույկներ ձեռք բերել։ Այսպիսով՝ նրանք դռնից դուրս արվելով, ներս են մտնում լուսամուտից» (Երկեր, հ. 29, էջ 213)։

Լենինը ցույց էր տալիս, թե բյուրոկրատներն ինչպիսի վնաս են հասցնում սովետական պետությանը։ Դա այն թարախապալարն է, որն արգելակում է մասսաների ինքնագործունեությանը, վերակառուցմանը, խանգարում դրա աշխատանքին։ Սակայն այդ թարախապալարն այնպիսին է, որ պահանջում է երկարատև բուժում։ «Կարելի է քշել ցարին,— քշել կալվածատերերին,— քշել կապիտալիստներին,— գրել է Լենինը։— Մենք այդ արել ենք։ Բայց չի կարելի «քշել» բյուրոկրատիզմը գյուղացիական երկրում, չի կարելի «երկրի երեսից ջնջել»։ Կարելի է միայն դանդաղ, համառ աշխատանքով այն նվազեցնել» (նույն տեղը, հ. 35, էջ 530)։

Հարցն այդպես էր դրվում, քանի որ նրա արմատները խոր էին։ Չնայած ոչնչացված էր բյուրոկրատիզմի սոցիալական բազան, սակայն անցման շրջանում մեզ մոտ նրա համար պահպանվում էին սնող միջոցները՝ թշնամի դասակարգերի մնացորդները, մանրբուրժուական տարրերը։ Այդ շրջանում բյուրոկրատիզմի առկայությունը Լենինն այսպես էր հիմնավորում. «Մեզանում բյուրոկրատիզմը տնտեսական ուրիշ արմատ ունի՝ մանր արտադրողի մանրատվածությունը, փոշիացածությունը, նրա աղքատությունը, անկուլտուրականությունը, ճանապարհազրկությունը, անգրագիտությունը, շրջանառության բացակայությունը հողագործության և արդյունաբերության միջև...» (Երկեր, հ. 32, էջ 450)։

Չնայած այժմ չկան բյուրոկրատիզմ ծնող սոցիալական հիմքեր, այնուամենայնիվ, պրակտիկայում առանձին օղակներում, առանձին աշխատողների մոտ այն, տարբեր երանգներով, դեռևս հանդես է գալիս։ Այդ ախտով տառապում են նրանք, ովքեր իրենց աշխատանքային գործունեությունը սահմանափակում են գրասենյակում։ Բյուրոկրատիզմի դրսևորումներից են վարչարարությունը, աշխատանքում ստեղծագործական պաթոսի բացակայությունը, շաբլոնը, ժողովամոլությունը, ինքնապահովագրությունը, սխալների սքողումը, ծառայական դիրքի չարաշահումը, կաշառակերությունը և այլն։

Կոմունիստական կուսակցությունն անողոք պայքար է մղում բյուրոկրատիզմի դրսևորումների դեմ, բարձրացնում սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը ՍՄԿԿ XXIII համագումարի առաջադրած խնդիրները լուծելու համար։

Պետական ապարատի աշխատանքի բարելավման պայմաններից է՝ կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը, նրանց գաղափարական-քաղաքական դաստիարակությունը, գործունեության նկատմամբ սիստեմատիկ վերահսկողության ու կատարման ստուգման իրականացման լենինյան սկզբունքի կիրառումը, ապարատում սոցիալիստական օրինականության ապահովումը, պետական կարգապահության ամրապնդումը։

Լենինը կոմունիստական կուսակցության հիմնական խնդիրը կադրերի ընտրության և տեղաբաշխման գործում համարում էր աշխատողների գործնական ու քաղաքական հատկանիշների խոր ուսումնասիրությունը։ Նա նշել է. «...զգաստ խելք և գործնական ըմբռնողություն ունեցող մարդկանց, այնպիսի մարդկանց, որոնք սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ, համատեղ աշխատանք առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ (Երկեր, հ. 27, էջ 314)։



Կազմակերպական աշխատանքը ցուցամոլություն, շաղակրատություն, միտինգարարություն չի հանդուրժում։ Շաղակրատներից, ցուցամոլներից ազատվելու և պետական ապարատը սոցիալիզմին նվիրված գործիմաց կադրերով համալրելու համար Լենինը պահանջում էր «Ուսումնասիրել մարդկանց, որոնել ձեռնհաս աշխատողների։ Այժմ էականն այդ է. առանց դրան բոլոր հրամաններն ու որոշումները կեղտոտ թղթեր են» (Երկեր, հ. 35, էջ 582)։

Կադրերի ընտրությունն ու դաստիարակությունը միշտ եղել և մնում է մեր կուսակցության կարևորագույն հարցը։ Կուսակցության XXIII համագումարն ընդգծեց, որ կոմունիստական շինարարության հարաճուն մասշտաբներն ու բարդությունները ավելի բարձր պահանջ են ներկայացնում կադրերի ընտրության, առաջքաշման ու դաստիարակման նկատմամբ (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, 1967, էջ 311)։ Համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց երիտասարդ կադրերի առաջքաշման և սոցիալիստական տնտեսավարության նոր սիստեմին անցնելու կապակցությամբ ղեկավար կադրերի կողմից տնտեսական ղեկավարման մեթոդներին տիրապետելու գործին։

Կադրերի ճիշտ ընտրության համար կարևոր է նրանց գործունեության ստուգումը աշխատանքի պրոցեսում։ Լենինը գրում էր, որ պետական, տնտեսական ապարատում բյուրոկրատիզմի, քաշքշուկի, գրասենյակայնության, կուսակցության և կառավարության որոշումների ու դիրեկտիվների խեղաթյուրման, բոլոր սխալների, ձախողումների և թերությունների ինը-տասներորդականը բացատրվում է փաստական կատարման ճիշտ հիմքերի վրա դրված ստուգման բացակայությամբ. «...ամբողջ աշխատանքի մեխը մարդկանց ընտրությունը և կատարման ստուգումն է։ Եթե մենք այդ տեսակետից սովորենք գործնականապես, գործնական օգուտ բերենք, այն ժամանակ մենք նորից կհաղթահարենք բոլոր դժվարությունները» (Երկեր, հ. 33, էջ 362)։ Մարդկանց ընտրության, նրանց անհատական պատասխանատվության սահմանման կապակցությամբ նա գրում է, որ «...մոմենտի առաջնահերթ խնդիրը դեկրետները չեն, վերակառուցումները չեն, այլ մարդկանց ընտրությունր. անհատական պատասխանատվության հաստատումը կատարվողի համար. փաստական աշխատանքի ստուգումը։ Այլապես մեզ խեղդող բյուրոկրատիզմից և քաշքշուկից դուրս չենք գա» (նույն տեղը, հ. 35, էջ 584)։

Կոմունիստական շինարարության ներկա ժամանակաշրջանում պահանջվում է առավելապես ուժեղացնելու կատարման ստուգումը, քանի որ կատարման ստուգումն ու կատարման կազմակերպումը միասնական պրոցես է։ Իսկ այդ պրոցեսի ճիշտ կազմակերպումը պետական ապարատում տեղ գտած թերությունները բացահայտելու և այդ աշխատանքը բարելավելու համար ռեալ միջոցներ նշելու կարևոր նախապայմանն է։ ՍՄԿԿ XXIII համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման կապակցությամբ ընդունված բանաձևում ասված է. «Համագումարը մեծ նշանակություն է տալիս կուսակցության և կառավարության որոշումների կատարման վերահսկողության ու ստուգման ճիշտ դրվածքին» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութեր, «Հայաստան» հրատարակչություն, 1967, էջ 311)։

Սովետական պետական ապարատի գործունեության բարելավման համար կարևոր նշանակություն ունի նաև նրա օղակներում կոլեգիալ և միանձնյա ղեկավարման սկզբունքների ճիշտ զուգակցումը և կիրառումը։ Կոլեգիալ ղեկավարման մեթոդը բարձրագույն սկզբունք է ո՛չ միայն կուսակցական, այլև պետական ղեկավարության համար։ Կոլեգիալ ղեկավարությունը միջոց է

առավել ճիշտ, խոր ու բազմակողմանի քննարկելու և լուծելու պետական ու ժողովրդական տնտեսության կարևորագույն հարցերը։ Սակայն աշխատանքի կոլեգիալությունն ապահովում է սովետական պետական մարմինների առաջ դրված խնդիրների հաջող լուծումը միայն այն դեպքում, երբ դրան զուգակցվում է անձնական խիստ պատասխանատվությունը՝ ընդունվող որոշումների կատարման համար։

Բանվոր դասակարգի դիկտատուրայի դարաշրջանում լայն դեմոկրատիայի իրագործումը չի բացառում աշխատանքի պրոցեսի միանձնյա տնօրինումը։ Միանձնյա ղեկավարության անհրաժեշտությունը, որպես նյութական բարիքների արտադրության կազմակերպման ձև, բխում է մարքս-լենինյան տեսության այն դրույթներից, որ խոշոր մեքենայական ինդուստրիայի հիմքի վրա կազմակերպված հասարակական ամեն մի աշխատանք անհնար կլինի առանց աշխատանքային պրոցեսի բոլոր մասնակիցներին ուղղություն տվող խստագույն միասնական կամքի։

«Պետք է սովորել,— ասում է Վ. Ի. Լենինը,— աշխատավոր մասսաների բուռն, գարնանային հորդությամբ հոսող, բոլոր ափերից դուրս եկող միտինգային դեմոկրատիզմը միացնել երկաթե կարգապահության հետ աշխատանքի ժամանակ, անառարկելի ենթարկման հետ— մի անձի, սովետական ղեկավարի կամքին՝ աշխատանքի ժամանակ» (Երկեր, հ. 27, էջ 326)։

Սովետական պետական ապարատի վերակառուցման և աշխատանքի բարելավման ուղիները բազմաթիվ են ու բազմազան։ Սակայն այդ գործի հաջող կազմակերպման և իրականացման երաշխիքներից մեկը և ամենագլխավորը կոմունիստական կուսակցության ղեկավարության ապահովումն է սովետական պետական ապարատի նկատմամբ։ Սովետական պետական ապարատի ստեղծումը, նրա գործունեության ուղղությունն ու նպատակը պայմանավորված է կոմունիստական կուսակցության քաղաքականությամբ։ Պետական ապարատի ամրապնդման և կատարելագործման, նրա աշխատանքի բարելավման հարցերը եղել և մնում են կոմունիստական կուսակցության գլխավոր հոգսերից մեկը։

Կուսակցության ղեկավարությունը գլխավոր նախապայմանն է պետական ապարատի աշխատանքի հաջող կազմակերպման, նրա գործունեության լենինյան սկզբունքի հետևողական իրագործման համար։ Եվ ՍՄԿԿ ծրագիրը սահմանում է. «Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը բնութագրվում է կոմունիստական կուսակցության, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության հետագա աճմամբ» (ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, 1961, էջ 164)։



Է. Մ. ԹՈՔՄԱՋՅԱՆ

# ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Մեր երկրում կոմունիստական հասարակության նյութատեխնիկական բազայի կառուցման գործում էական նշանակություն ունի արտադրության կառավարման մեթոդների կատարելագործումը։

Զարգացման ժամանակակից փուլը բնութագրվում է արդյունաբերական արտադրության մասշտաբների աննախընթաց աճով, որը պահանջում է փնտրել արտադրության կառավարման առավել պրոգրեսիվ ձևեր։ Այդ բանը ցայտուն կերպով հաստատում է տնտեսական ռեֆորմը, որը շոշափում է պլանավորման, կառավարման և նյութական խթանման հարցերը։

Իրագործվող տնտեսական ռեֆորմի նպատակն է՝ արտադրության կառավարման սիստեմի բարելավման միջոցով հասնել լավագույն արդյունքների։ Ներկայումս հանրապետությունում պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմին են անցել մոտ 350 արդյունաբերական ձեռնարկություն, որոնց փորձի հիման վրա կարելի է որոշ եզրակացություններ անել։ Ռեֆորմի հիմնական դրական կողմը արտադրանքի իրացման ցուցանիշի և արտադրական ֆոնդերի գոյացման ու բաշխման միջոցով ձեռնարկության գործունեության գնահատումն է։ Ներդրվող տնտեսական սիստեմի առավելություններից մեկն էլ ձեռնարկությունում ստացված շահույթի անմիջական տարափոխման հնարավորության ընձեռումն է։

Պրակտիկայում արմատավորվող ռեֆորմն ունի նաև սոցիալական մի շարք հետևանքներ, օրինակ, սոցիալական խմբերում կատարվող փոփոխությունները։ Սոցիալական խմբերի կառավարման սխեմա մշակելու համար գոյություն ունեցող սոցիալական իրականության մանրակրկիտ ուսումնասիրության վրա հիմնված մոդելներ են անհրաժեշտ։

Կուտակված փորձը վկայում է, որ սոցիոլոգիական կոնկրետ հետազոտությունները աստիճանաբար պատշաճ տեղ են գրավում մարքսիստական սոցիոլոգիայի սիստեմում։ Հայտնի է, որ կոնկրետ սոցիոլոգիան առաջացավ առանձին սոցիալական գիտությունների, բուն իսկ սոցիոլոգիայի դիֆերենցիացիայի և կառավարման պրակտիկայի պահանջմունքների հիման վրա։ Ընդ որում, սոցիոլոգիայի այդ ճյուղի (կոնկրետ, էմպիրիկ) ձևավորումը տեղի էր ունենում այն շրջանում, երբ վաղօրոք ձևավորված գիտությունների առջև նոր խնդիրներ էին ծառանում։

Արտադրության տնտեսական կառավարումը ենթադրում է մի շարք կոնկրետ սոցիոլոգիական խնդիրների լուծում. մարդկանց գործունեության ուղղության ու բնույթի, վարքագծի, ներխմբային և միջխմբային հարաբերությունների ուսումնասիրություն և այլն։ Այդ հարցերը կարելի է քննել գնահատականների մեթոդով։ Գնահատականը չի կարելի փոխարինել որևէ այլ ցուցանիշով, քանի որ վերջինս հնարավորություն է ընձեռում որոշել այն փոխադարձ կախվածությունները, որոնք ուրիշ ցուցանիշների միջոցով հնարավոր չէ հաստատել։ Գնահատականները, մասնավորապես, հնարավորություն են տալիս բացահայտել սոցիալական ռեալության և դրա այն մոդելների միջև արդեն ձևավորված հարաբերությունները, որոնք տարբեր սոցիալական խմբերի համար իդեալական են։

Գնահատման ցուցանիշների օգտագործումը կոնկրետ սոցիոլոգիայի առարկայի առանձնահատկության դրսևորումներից է։ Այդ կապակցությամբ հաճախ արվում են անհիմն առարկություններ, թե իբր սոցիոլոգիայում տեղ է գտել սուբյեկտիվիզմը։ Հայտնի է, որ ստացված գնահատականների շարքերի համակարգումը, մաթեմատիկական և վիճակագրական մեթոդները որոշակի չափով թույլատրում են դիտարկվող սուբյեկտիվ դրսևորումներում ի հայտ բերել որոշ օբյեկտիվ օրինաչափություններ։ Սակայն այն դեռ իրավունք չի տալիս ստացված տվյալը բարձրացնել օրենքի աստիճանի։

Արտադրության տնտեսական կառավարման ոլորտում փորձնական սոցիոլոգիայի կիրառման առումներում խիստ հետաքրքրական են աշխատանքային ռեսուրսների կառավարման հետ կապված խնդիրները։ Այստեղ վերլուծվում են բանվորական ուժի շարժման հարցերը, հաշվարկվում հոգնածության և մասնագիտությունների գրավչության գնահատականները, նյութական շահագրգռվածություն ձևավորող գործոնները և այլն։

Այժմ բնորոշ է գործնականում արտադրության օպտիմալ պլանավորման և կառավարման մեթոդների աստիճանաբար ներդնումը։ Առաջադիմություն կա արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում տերիտորիալ տեղաբաշխման օպտիմիզացման գործում։ Սակայն մինչև այժմ այդ հաշվարկները կատարվում են գրեթե հաշվի չառնելով աշխատանքային ռեսուրսների սահմանափակությունը, մի բան, որ հակասում է օպտիմալ պլանավորման բուն իսկ մեթոդին։ Ժամանակակից պրակտիկան ենթադրում է, որ աշխատանքը արտադրության ամենաշարժուն տարրն է և կարող է վերաբաշխվել այնպես, որպեսզի բավարարի շրջանների և ճյուղերի պահանջմունքները։ Բանվորական ուժի տերիտորիալ կամ միգրացիոն շարժումը սոցիալական պրոցես է, որի անհրաժեշտ պայմաններից է աշխատողի ինքնուրույնությունը՝ որոշելու բնակավայրը և աշխատանքը։ Ընդ որում, գրեթե ամեն տեղ աշխատանքի տարբեր ձևերի նկատմամբ եղած պահանջարկի պայմաններում, այդ գործոնը միգրացիայի ձևավորման մեջ հանդես է գալիս առաջին տեղում։ Հետևաբար, միանգամայն ակնհայտ է, որ շրջանի, ճյուղի կամ տնտեսության մասշտաբով ձեռնարկությունների տեղաբաշխումը կանոնավորելու տնտեսական խնդիրները չեն սահմանափակվում արտադրության լավագույն տեղաբաշխմամբ՝ բերված ծախսերը նվազագույնի հասցնելու դիրքերից։ Անհրաժեշտ է նաև որոշել բանվորական ուժի միգրացիոն հոսանքների օպտիմալ պարամետրերի (ինտենսիվության ուղղությունը) և այն պայմանները, որոնք ծախսումների նվազագույն գումարի դեպքում ապահովում են շրջանների և ճյուղերի միջև



բանվորական ուժի անհրաժեշտ վերաբաշխումը։ Ինչպես տեսնում ենք, անհրաժեշտ է միգրացիոն պրոցեսների սոցիոլոգիական վերլուծությունը։

Սոցիոլոգիական ուսումնասիրության բնագավառ է աշխատանքի ինտենսիվությունը կարգավորող ոլորտը, որը կապված է աշխատանքի արտադրողականության այնպիսի կարևոր գործոնի հետ, որպիսին աշխատողների հոգնությունն է։ Հոգնության պրոբլեմը մեծ նշանակություն է ստանում ժամանակակից քաղաքակիրթ հասարակությանը բնորոշ պրոցեսների կապակցությամբ՝ տեխնիկական պրոգրեսը, քաղաքներում բնակչության խտության բարձր մակարդակը, սոցիալական վերափոխումների շեշտակի տեմպը։ Այդ պրոբլեմը հաջող լուծելու համար, անհրաժեշտ է նախ և առաջ լուծել հոգնության դրսևորման և չափման մեթոդների հարցը։ Ներկայումս տնտեսագետը մարդու հոգնածության աստիճանի մասին դատելու համար ունի միայն մեկ հնարավորություն՝ գնահատել նրա աշխատունակության փոփոխությունները արտադրանքի թողարկման ցուցանիշների միջոցով։ Այդ ցուցանիշների օգտագործման դժվարությունն այն է, որ աշխատանքի ինտենսիվության հետ մեկտեղ դրանց վրա ազդում են շատ գործոններ, որոնց բավականաչափ ճշգրիտ հաշվի առնելը հնարավոր չի թվում։ Հաշվի առնելով այդ բանը, հարկավոր է ընդունել, որ հույժ հնարավոր է աշխատանքի արտադրողականության մակարդակի (և համապատասխանաբար հոգնության աստիճանի) հետազոտման անցկացումը սովետական մասնագետ-սոցիոլոգների առաջարկած հարցման հատուկ սոցիոլոգիական մեթոդի[1] միջոցով, որում արտացոլում են գտել ժամանակակից աշխատանքի հոգեբանա-ֆիզիոլոգիական նվաճումները։

Աշխատանքի կազմակերպման պրոցեսում դեռ չի հաղթահարված աշխատուժի հոսունությունը։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հոսունության չափերի վրա մեծ ազդեցություն են գործում ոչ միայն աշխատանքի պայմանները, աշխատավորի որակավորումը, այլև վերաբերմունքը դեպի մասնագիտությունը։ «Վերաբերմունքը դեպի մասնագիտությունը» հասկացությունը նշանակում է մարդու պրոֆեսիոնալ գործունեության միջոցով կենսական պահանջների իրագործման գիտակցումը։ Նրա համար տվյալ մասնագիտությունը կարող է լինել լոկ ապրելու կամ ընդունակությունների դրսևորման միջոց։ Այդ առնչությամբ հարցման եղանակով ստացված գնահատականներն իրենցից ներկայացնում են հասարակական գիտակցության ինքնատիպ ձև՝ սուբյեկտիվ գնահատականներ, որոնք արտահայտում են անհատի վերաբերմունքը տվյալ մասնագիտությունների նկատմամբ։ Սակայն դրանցից չի բխում, թե այդ գնահատականները պատահական են։ «Նույնիսկ մշուշապատ գոյացումները մարդկանց ուղեղում,— գրում էր Կ. Մարքսը,— նույնիսկ դրանք անհրաժեշտ արդյունքներ են, նրանց նյութական կենսական պրոցեսի մի տեսակ գոլորշիացումներ, պրոցես, որը կարող է իրականանալ փորձնականորեն և որը կապված է նյութական նախադրյալների հետ»[2]։ Ունենալով այդպիսի գնահատականների սիստեմ՝ իրենց դինամիկայում, կարելի է հետևել նրանց փոխակերպմանը և վերջինս կապել տեխնիկական պրոգրեսի աճի հետ։ Անվիճելի է, որ նման վերլուծությունը թույլ կտա մի քանի հույժ կարևոր եզրակացություններ անել ըստ մասնագիտությունների աշխատանքային ռեսուրսները հնարավոր ձևով բաշխելու վերաբերյալ։ Դրան ավելացրած՝

[1] См. **Г. Н. Черкасов** — К характеристике методов оценки утомления. Новосибирск, НГУ, 1966, стр. 222.

[2] **В. В. Розенблат** — Проблемы утомления, 1961, стр. 81.
**К. Маркс и Ф. Энгельс.** Сочинения, т. 3, стр. 25.

երիտասարդ մասնագետների պատրաստման պլանի նպատակային ֆունկցիայում կավելանա ևս մեկ փաստարկ:

Քննված բոլոր դեպքերում մնում է չափազանց բարդ հետևյալ հարցը. ինչպիսի՞ն է քանակական վերլուծության ապարատը կոնկրետ սոցիոլոգիական վերլուծության մեջ: Դա հատկապես վերաբերում է երկու հիմնական մոմենտի՝ ընտրության և սանդղակների ստեղծման պրոբլեմներին: Դա հասկանալի է, քանի որ ընտրողական դիտարկումը բացառիկ կարևոր դեր է խաղում վիճակագրությունում, իսկ վերջինիս ապարատը մի շարք դեպքերում ձևավորում է այս կամ այն սոցիոլոգիական եզրակացությունը: Էական է սոցիոլոգիական ինֆորմացիայի վիճակագրական սիստեմավորումը՝ սանդղակների ստեղծումը: Տարբեր տեսակի սանդղակների ստեղծումը լայնորեն օգտագործվում է վիճակագրության մեջ (այսպես, օրինակ, տարբեր տեսակի դիագրամներ՝ սյունյակային, ժապավենաձև, կոորդինատային, ռադիկալ, սեկտորային և այլն): Սակայն սանդղակների ստեղծման հարցը սոցիոլոգիական վերլուծության անցկացման պրոցեսում կապված է սկզբունքային հնարավորության հետ՝ սոցիալական երևույթները պատկերել որոշակի քանակական շարքի տեսքով:

Սկզբունքորեն սոցիալական երևույթներն ունեն այնպիսի քանակական բնութագրեր, որոնք կարելի է տեղավորել քանակական շարքում: Ըստ էության ամեն մի հասարակ համեմատության մեջ «ավելի», «պակաս», «հավասար», մենք արդեն գործ ունենք որոշակի քանակական շարքի հետ: Սակայն սոցիալական երևույթների զանազան հատկանիշների (գծերի) չափման աստիճանը և, որ գլխավորն է, սոցիալական երևույթների տարբեր բնութագրերի նկատմամբ չափման տեխնիկայի կիրառման հարցը սուր մեթոդոլոգիական պրոբլեմ է, որի շուրջը մինչև այժմ վիճում են:

Մեթոդոլոգիական տեսակետից հարցի ամբողջ խորությունն ու բարդությունը զգալու համար անհրաժեշտ է ծանոթանալ սանդղակավորման ընդհանուր սկզբունքների և տեխնիկայի հետ:

Գոյություն ունեն սանդղակավորման վեց հիմնական ընդհանուր սկզբունքներ.

Առաջին, յուրաքանչյուր սանդղակավորում ենթադրում է, որ ուսումնասիրվող երևույթի մեջ գոյություն ունի ցուցանիշների ինչ-որ անընդհատ շարք՝ կոնտինուում[1]: Երկրորդ, սանդղակը միշտ պետք է հուսալիություն ունենա, այսինքն՝ նույն ընտրության դեպքում այն մշտապես պետք է տա նույն արդյունքները: Երրորդ, սանդղակը պետք է հիմնավորված լինի, այսինքն՝ չափի ինչ-որ նպատակադրվածություն: Չորրորդ, անհրաժեշտ է, որպեսզի սանդղակի բոլոր կետերը (կամ հատկությունները) համեմատելի լինեն: Հինգերորդ, սանդղակի կետերն իրենք կարող են դիրեկտիվ կամ կանխատեսող լինել: Վեցերորդ, սանդղակում պետք է ապահովված լինի կետերի հավասարությունը, այսինքն՝ մեկ կետը մյուսի հանդեպ պետք է հավասար հեռավորության վրա լինի: Եթե ինչ-որ բան «կրկնակի» անգամ մեծ է նախորդից, ապա հետևյալ կետը պետք է դարձյալ «կրկնակի» անգամ մեծ լինի նախորդից (եթե կառուցվում է երկրաչափական պրոգրեսիայի կարգով), կամ եթե ինչ-որ բան «այսքան անգամ» փոքր է նախորդից, ապա հետևյալ կետը պետք է հենց նույնքան անգամ պակաս լինի՝ հավասար միջոցների միջոցով:

1 Տե՛ս Ֆ. Հուդ և Պ. Հատտ, Մեթոդները սոցիալական գիտություններում (անգլ.), Նյու-Յորք—Տորոնտո—Լոնդոն, 1952, էջ 197:



Վերջին կանոնի պահպանումը համարվում է ամենադժվարը սանդղակներ կազմելիս: Սոցիոլոգիական սանդղակներ հաշվարկող մասնագետների մեծամասնությունը գիտե, որ այդպիսի «կետերի հավասարությունը» գրեթե անհնարին է: Բայց և այնպես նրանք արտահայտվում են հօգուտ սանդղակների գործադրման, դա բացատրելով հետևյալ կերպ. «ամեն մի սանդղակ, որ «հուսալի» է և «հիմնավորված», անկախ նրա ցուցանիշների կոպտությունից, ավելի լավ է, քան սանդղակների բացակայությունն առհասարակ, քանի որ չի կարելի ավելի ճշգրիտ տեխնիկայի հասնել»:

Իսկ ինչ վերաբերում է կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունների համաշխարհային պրակտիկային, ապա այստեղ սանդղակներն ավելի ակտիվորեն են գործադրվում:

Առավելապես մշակված են հետևյալ տիպի սանդղակները՝ սոցիալական դիստանցիա, նորմավորում, ներքին հետևողականության դասակարգում և սանդղագրային վերլուծություն: Որքանով որ սանդղակները գործնականապես հանդիսանում են հաշվարկային գործիքակազմ կոնկրետ-սոցիոլոգիական վերլուծության մեջ, կանգ առնենք դրանց էության և նշանակության աստիճանի վրա:

«Սոցիալական դիստանցիայի» սանդղակները կիրառվում են «չափելու» որևէ խմբի հարաբերությունը մյուս խմբի հետ, որևէ սոցիալական երևույթի կամ անհատի նկատմամբ: Այն սովորաբար բնութագրվում է այնպիսի կետերով, ինչպես՝ բարյացակամությունը, անտարբերությունը, անբարյացակամությունը, թշնամանքը և այլն: Հենց այդ տերմինների մեջ է նկատի առնվում տարբեր խմբերի միջև գոյություն ունեցող «սոցիալական դիստանցիան»: «Սոցիալական դիստանցիան առաջին անգամ կիրառեց Բոգարդուսը, որի անունով էլ երբեմն կոչում են այն: Նա սահմանում էր ԱՄՆ-ի տարբեր էթնիկական խմբերի միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունները, «սոցիալական դիստանցիան»: Այդ ցուցանիշների շղթան, դրանց հետևողական դասավորությունը մի շարքում՝ մեկնաբանվում էր որպես մի որոշակի քանակակազմ, այսինքն՝ անմիջական քաղաքացիների, այս կամ այն էթնիկական խմբի ներկայացուցիչների համար «ընդունելիության» աստիճանի անընդհատ գիծ: «Սոցիալական դիստանցիա» հասկացությունը այստեղ որոշ առումով սուբյեկտիվ է մեկնաբանվում. այն հանգում է ուրիշների կողմից որոշ սոցիալական խմբերի «ընկալման» զանազան տիպերի և ամբողջովին անտեսում տարբեր խմբերի դրության մեջ եղած օբյեկտիվ հատկանիշները, որոնք կարտահայտեին այդ խմբերի միջև գոյություն ունեցող տարբերությունները, որպիսիք որոշում են դրանց միջև եղած «դիստանցիան»: Ակնհայտ է, որ ամենաբարդ տեխնիկան այստեղ ընդհանրապես հանգեցնում է իրենց բովանդակությամբ շատ աննշան եզրակացությունների: Դժվար է ասել, կարող է արդյոք այդպիսի սանդղակի նշանակություն ունենալ նույնիսկ սահմանափակ իմաստով, քանի որ նրա կիրառման հարցը դեմ է առնում ավելի խոր մեթոդոլոգիական հարցի՝ «սոցիալական դիստանցիա» հասկացության բովանդակության հարցին: Ընդհանրապես ասած, զանազան ազգային կամ սոցիալական խմբերի միջև եղած հարաբերությունների բնույթն ուսումնասիրելու բուն իսկ գաղափարը անպայման օրինաչափ է սոցիոլոգիայում: Բայց այդպիսի հետազոտություններում մեթոդոլոգիական տեսակետից կարևոր է լուծել երկու հարց՝ առաջին, ինչպիսի՞ ցուցանիշներ ընտրել փոխհարաբերությունների բնութա-

գրման համար և երկրորդ, ինչպե՞ս այնուհետև պատճառականորեն բացատրել փոխհարաբերությունների տվյալ բնույթը։

Նորմավորման սանդղակները՝ գնահատականների սիստեմ են։ Այդ սանդղակի կիրառման համար հարկավոր է երեք տարր՝ գնահատման ենթակա երևույթներ, «դատավոր»-նորմավորողներ, որոնք դնում են այդ գնահատականները և կոնտինուում՝ այն անընդհատ շարքը, որ բաղկացած է գնահատականներից։ Արտասահմանում (Անգլիայում, Ֆրանսիայում, Հարավսլավիայում և հատկապես ԱՄՆ-ում) այդ սանդղակները կիրառվում են զանազան հիմնարկություններում անձնակազմի աշխատանքը, տարբեր մասնագիտությունների գրավչությունը, դասավանդման արդյունավետությունը և այլն ուսումնասիրելիս։ Այդ տեսակի սանդղակները կարող են կազմվել երկակի ձևով՝ գրաֆիկական և նկարագրական։

Սոցիալիստական տնտեսության պայմաններում այդպիսի սանդղակների կիրառումը կարող է շատ արդյունավետ լինել բանվորական ուժի հոսունությունը վերլուծելիս և երկրի, հանրապետության կամ շրջանի աշխատանքային միջոցները տեղաբաշխելիս։ Սովետական որոշ տնտեսագետներ այդ մասին սկսել են գրել։

Դասակարգման (կլասիֆիկացիայի) սանդղակները շատ մոտ են նորմավորման սանդղակներին։ Սակայն այստեղ բացակայում է գնահատականների նախապես կազմված ցանկը, իսկ սանդղակը կազմվում է (ամենապարզունակ դեպքում) երկու բնութագրերը միմյանց հետ համադրելու, այսպես կոչված զուգահամադրությունների միջոցով։

Այդ սանդղակի կատարելագործումը տվել է հետևյալ՝ ներքին հետևողականության տիպի սանդղակ։ Վերջինիս էությունն այն է, որ ինֆորմացիա հավաքելիս հարցման ենթարկվող սուբյեկտին հնարավորություն չի տրվում ծանոթանալու ստերեոտիպ գնահատականների հավաքածուին։ Արդյունքն այն է լինում, որ ստացվում է «անկախ» սանդղակ։ Դա կոչվում է քվեարկության սկզբունք։ Այդ կարգի սանդղակի առանձնահատուկ տեսակը հանդիսանում է, այսպես կոչված՝ ռեստորանային հարցը։ Այս դեպքում սանդղակը կառուցվում է «ճաշացանկի» սկզբունքով, այսինքն՝ հարցման ենթարկվողին առաջարկվում է պատասխանների հավաքածու և նա ինքը պետք է ընտրի այն, ինչն իրեն հարմար է։

Սանդղակագրային վերլուծությունը, որ առաջարկել է Կ. Գուտմանը և լայնորեն օգտագործվում է ներկայումս, նպատակ ունի ավելի կատարելագործել սանդղակավորումը։ Գուտմանը քննադատեց գոյություն ունեցող սանդղակների «բազմաչափությունը»։ Այդ քննադատության էությունը հետևյալն է. եթե մենք, նշում էր նա, ունենք ինչ-որ ցուցանիշների մի քանակական շարք, ապա դրանում նկատվում է որոշակի հետևողականություն, սակայն, որոշ բնութագրերի այդ հետևողականությունը, ամբողջությամբ վերցրած, «բազմաչափ» է։ Բայց չէ՞ որ յուրաքանչյուր որակ, յուրահատկություն, հարաբերություն ունեն շատ կողմեր։ Իսկ ինչպե՞ս անել, որպեսզի ստացվի սանդղակավորվող կետերի յուրաքանչյուր առանձին կողմի գնահատությունների հետևողականություն։

Գուտմանի սանդղակագրային վերլուծությունը ենթադրում էր սանդղակի վրա կետերի դասավորության այնպիսի կարգ, որ, նայած դրանց պատասխաններին, բոլոր հարցման ենթարկվողները կարողանան դասավորվել մեկ շարքում, այսպես կոչված՝ «ըստ կարգի»։



Սակայն Գուտմանի սանդղակագրային վերլուծության հնարավորությունները, ինչպես և տարբեր տիպի սանդղակներն առհասարակ, խիստ չափազանցված են։ Պրակտիկան ցույց է տալիս, որ այդ տեխնիկան ամենևին էլ չի կարող բարդ տեսական պրոբլեմների վերլուծության «բանալի» հանդիսանալ[1]։ Սանդղակների սահմանային կետերի, միջտարածությունների մեծության, չափաբերման ընտրած միավորների վերաբերյալ հարցն այնքան բարդ է, որ առայժմ այն կարելի է լուծված համարել ամենապարզ դեպքերի համար։

Մոտավորապես այսպիսին են արտասահմանյան պրակտիկայի սոցիոլոգիական ինֆորմացիայի մշակման ու համակարգման քանակական մեթոդները։ Որպես զուտ տեխնիկական հաշվարկային գործիքների ամբողջություն, դրանք կարող են հաջողությամբ օգտագործվել սոցիալիստական տնտեսության միջխմբային և ներխմբային կապերի վերլուծության պրակտիկայում։

Եթե հաշվի առնենք սոցիոլոգիական հետազոտությունների քննարկվող ուղղությունների գործնական կողմը, ապա իմացությունն առաջին հերթին պետք է վերաբերի տվյալ պրոցեսը որոշող այն գործոնների վերլուծությանը, որոնց մեջ հարկավոր է հատկապես առանձնացնել կանոնավորվող պարամետրերը։ Իսկ եթե պրոցեսի զարգացումը համարժեքորեն որոշվում է այնպիսի պայմաններով, որոնք գիտակցական կարգավորման չեն ենթարկվում, ապա առաջին պլան է մղվում պրոցեսի ճիշտ կանխագուշակման, այսինքն՝ սովորական նախիմացության խնդիրը։

Մինչդեռ կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունները պետք է դառնան սոցիալիստական հասարակության զարգացման տնտեսական կարգավորման ազդակներից մեկը։ Նրա զարգացումը պայմանավորում է բնակչության բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացում, պահանջմունքների մեծացում, սպառման ու սպասարկման առարկաների նկատմամբ գեղագիտական վերաբերմունքի դրսևորում, պրոֆեսիաներ ընտրելու հարցում անհատական հակումների հաշվառում։

Ինչպես ցույց են տալիս այդպիսի հետազոտությունների գործնական կիրառման արդյունքները, սահմանվում է աշխատանքների ընդհանուր ծավալի մեջ պրոֆեսիոնալ աշխատանքի գործադրման ցանկալի բնագավառ։ Հայաստանի քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում նման վերլուծության ժամանակ առավել մեծ գնահատական ստացել է «ռադիոտեխնիկայի» մասնագիտությունը։ Սակայն, մինչ այդ ուսումնասիրությունն այն հնարավոր չէր ենթադրել։ Նպատակահարմար է հանրապետությունում նման հետազոտություններ ծավալել արտադրության տարբեր ճյուղերում, հատկապես ուսումնասիրել աշխատանքի սոցիալական առումները։

Այսպիսով, արտադրության զարգացումն ավելի սերտորեն է կապվում տարբեր սոցիալական խմբերի վարքագծի հետ։ Հենց այդ դրույթն է ընկած սոցիոլոգիայի և արտադրության տնտեսական կառավարման կապի հիմքում։

---

[1] Տես՝ **И. Кон**. Позитивизм в социологии, 1963.
**Г. Андреева**. Современная буржуазная эмпирическая социология, 1965.



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՔԱՂԻՆՖՈՐՄԱՏՈՐԻ ԽՈՍՔԸ

Ախուրյանի շրջանի Հայկավան գյուղի քաղինֆորմատորների խմբում ընդգրկված են երեք կոմունիստ՝ միջնակարգ դպրոցի ուսուցիչ Անուշավան Մազմանյանը, կոլտնտեսության տնտեսագետ Վաղարշակ Ասլանյանը և բրիգադավար Միշա Համբոյանը։ Առաջին հայացքից կարող է թվալ, թե խումբը սակավաթիվ է։ Բայց բանն այն է, որ կուսակցական բյուրոն շատ մտածված է ընտրել քաղինֆորմատորներին։ Երեքն էլ գյուղի սաներն են, գործի նկատմամբ իրենց գիտակից վերաբերմունքով նվաճել են կոլտնտեսականների հարգանքը։ Նրանցից մեկն ունի բարձրագույն կրթություն, իսկ երկուսը հեռակայում են և շուտով կավարտեն Երևանի գյուղատնտեսական ինստիտուտը։ Կուսակցական աշխատանքում էլ նրանք նորեկներ չեն՝ անցած տարիներին նրանցից յուրաքանչյուրին բախտ է վիճակվել ղեկավարելու կոլտնտեսության կուսակցական կազմակերպությունը։

Մի խոսքով, հմտորեն է կատարվել ինֆորմատորների ընտրությունը, կուսբյուրոն հաշվի է առել նրանց հակումները։ Մազմանյանը գյուղի բնակիչներին տեղյակ է պահում կուսակցության ու կառավարության որոշումների և երկրի կուլտուրական կյանքի մասին, Ասլանյանը՝ էկոնոմիկայի հարցերի, Համբոյանը՝ միջազգային կյանքի իրադարձությունների և Սովետական Միության արտաքին քաղաքականության մասին։

Մարդիկ գոհունակությամբ և հաճույքով են լսում քաղինֆորմատոր Վաղարշակ Ասլանյանին։ Ո՞րն է դրա գաղտնիքը. այն, որ քաղինֆորմատորը գործադրում է զրույցի հետաքրքրական ձևեր, հաջողությամբ լուսաբանում օրվա հրատապ հարցերը, ունկնդիրներին համոզում գաղափարական կրքոտությամբ, կյանքից վերցրած կոնկրետ փաստերի ու թվերի զուգադրմամբ։ Այդ ամենը շարժում են մարդկանց հետաքրքրասիրությունը, մտքերը և նոր ձգտում առաջացնում՝ իրենց առաջ դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Վերցնենք թեկուզ անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցման վերաբերյալ զրույցը, որը քաղինֆորմատորն ունեցավ ֆերմայի աշխատողների հետ։ Ընդամենը երեսուն րոպե տևեց դա, սակայն որքան բովանդակալից և օգտակար էր այն։

Ասլանյանն իր զրույցն սկսեց հարցից՝ «Դուք լավ ծանո՞թ եք ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի որոշումներին»։ Ներկա եղողները գլխով արեցին, այսինքն՝ գիտենք, թերթերում ենք կարդացել, ռադիոյով լսել։ Ընդամենը մեկ հարց, սակայն արդեն հոգևոր կապ է ստեղծվել ունկնդիրների հետ, և քաղինֆորմատորը արդեն գիտե, թե ինչպես անցնի նախընտրած հարցին՝ անասնաբուծական մթերքների ինքնարժեքի իջեցմանը։ Նա համառոտակի պարզաբանում է դրա անհրաժեշտությունը և այդ առնչությամբ ատիճանաբար խոսք բացում ֆերմայի գործերի մասին։

Անցած տարի այստեղ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 25, իսկ ոչխարներինը՝ 50 գլխով։ Անասնապահության մեջ աշխատող կոլտնտեսականների թիվն առաջվանն է։ Սակայն նրանք սկսել են այլ կերպ վերաբերվել իրենց պարտականություններին. բարելավել են անասունների խնամքը, կատարելագործել աշխատանքի կազմակերպումը։

Նախկերի կրճատման կարևոր ռեզերվ է թաքնված աշխատատար պրոցեսների մեքենայացման մեջ։ Ֆերմայում ներկայումս գոմաղբի դուրս բերման հարմարանքներ, ավտոմատ խմոցներ են տեղադրված։ Բայց դա դեռևս քիչ է։ Հարկավոր է մեքենայացնել կերի պատրաստումն ու բաշխումը, կովերի կիթը, այլ կերպ ասած կոմպլեքսային մեքենայացման ենթարկել բոլոր աշխատանքները։

Անցյալ տարի յուրաքանչյուր կովից միջին հաշվով ստացվել է 1.500 լիտր կաթ։ Իսկ ահա առաջավոր կթվորուհիներ Օֆիկ Հակոբյանը և Հերիքնազ Բաղդասարյանը կարողացել են յուրաքանչյուր կովից կթել 1.800 լիտր։ Առաջավոր կթվորուհիների ստացած կաթի մեկ ցենտների ինքնարժեքը մոտ 20 տոկոսով ցածր է, քան ֆերմայում եղած միջին ինքնարժեքը։ Ռեալ հնարավորություններ կան, որպեսզի բոլոր կթվորները հասնեն առաջավորների ցուցանիշներին։

Ֆերմայում քիչ բան է արված կերի սննդային հատկությունները բարձրացնելու ուղղությամբ, թեև մեր երկրում մշակվել և թողարկվում են սննդային մի շարք հավելումներ՝ կոմբինացված կոշտ կերերի համար, ընդ որում դրանցից մի քանիսը կարելի է ստանալ տեղում։

Մարդիկ ուշադրությամբ էին լսում Ասլանյանի պատմածը։ Քաղինֆորմատորը չէր սահմանափակվում հարցերը դնելով. նա շարադրում էր իր հանձնարարականները, մատիտը ձեռքին հաշվում էր կաթի և մսի յուրաքանչյուր ցենտների ինքնարժեքը, համեմատում էր աշխատանքի զանազան պայմանները, հետաքրքրվում ֆերմայի աշխատավորների կարծիքով։

Ավելի խորն ընկալելով աշխատանքի տնտեսական լծակները, մարդիկ աշխուժացան, իրենք սկսեցին խոսել չօգտագործվող ռեզերվների, աշխատանքում եղած թերությունների վերացման մասին։ Օգտակար բոլոր առաջարկությունները Ասլանյանը ուշի-ուշով գրի էր առնում իր ծոցատետրում։ Վաղը նա այդ առաջարկությունները կհայտնի կուսբյուրոյին ու կոլտնտեսության վարչությանը։ Այդ գործն էլ նա համարում է քաղինֆորմատորի պարտականություններից մեկը։

Մարդկանց հետ շփվելու մանկավարժական հմտությամբ է օժտված նաև կոմունիստ Անուշավան Մազմանյանը։ Նա անցել է պատերազմի բովով, ունի բանակում քաղաշխատանքի փորձ, երկար տարիներ դասավանդում է դպրոցում։ Բնական է, որ մարդկանց համար նրա ունեցած ամեն մի ելույթը աչքի է ընկնում անմիջականությամբ, լայն ընդհանրացումներով, վերլուծության խորությամբ։ Ելնելով թեմայից, քաղինֆորմատորը ուշադրությամբ որոշում է նյութի հաղորդման ձևը։ Օրինակ, Մազմանյանը զրույց էր ունենալու կոլտն-

տեսային գյուղացիության բարեկեցության բարձրացման մասին և որոշում է մենակ չգնալ ակումբ. հրավիրում է գյուղսովետի նախագահին, կուսակցական կազմակերպության քարտուղարին, կոլտնտեսության վարչության անդամներին։ Գյուղի կյանքում տեղի ունեցած արմատական տեղաշարժերը քաղինֆորմատորը ցույց է տալիս սեփական կոլտնտեսության օրինակով։ Կոլտնտեսության գործերը լավ են ընթանում՝ անցյալ տարի ստացվել է 250 հազար ռուբլու շահույթ։ Անշեղորեն աճում են կոլտնտեսականների եկամուտները, բարելավվում է նրանց կենցաղը, բարձրանում կուլտուրան։ Կոլտնտեսականների ընտանիքների մեծամասնությունը տեղափոխվել է նոր բնակարաններ։ Երկու տարի առաջ գյուղում բացվել է տասնամյա դպրոց, կառուցվել է բաղնիք, փոստի բաժանմունք, անց է կացվել երկրորդ ջրմուղ։

Այնուհետև գյուղի զարգացման հեռանկարների մասին հանդես եկան գյուղսովետի նախագահ Ա. Նազարյանը, կուսբյուրոյի քարտուղար Վրույր Խլղաթյանը։ Մարդիկ ղեկավարներին լսում էին ուշադրությամբ, ելույթներից հետո շատ հարցեր տվեցին։ Եղան նաև առանձին գանգատներ. «Ինչո՞ւ փողոցներում եղած ջրի ծորակների կեսը չի գործում», «Գյուղսովետը ե՞րբ է ուշադրություն դարձնելու փողոցների կանաչապատման վրա» և այլն։ Մազմանյանն ուշադրությամբ գրի առավ դրանք. չէ՞ որ քաղինֆորմատորի հաջորդ զրույցի ժամանակ անպայման հարց են տալու, թե ի՞նչ միջոցներ են ձեռնարկված։ Գոհունակությամբ են ցրվում մարդիկ՝ հետաքրքիր ու օգտակար էր հանդիպումը քաղինֆորմատորի և գյուղի ղեկավարների հետ։

Քաղինֆորմատոր Միշա Համբոյանի հասարակական աշխատանքի փորձը Մազմանյանի ու Ասլանյանի փորձից պակաս չէ։ Այլ է նրա քաղինֆորմացիայի բնույթը։ Վերջին ժամանակներս խիստ աճել է մարդկանց հետաքրքրությունը միջազգային կյանքի հանդեպ։ Չկա կոլտնտեսականի որևէ ընտանիք, որը բաժանորդագրված չլինի միութենական կամ հանրապետական թերթերի, ամեն մեկի տանը այժմ կա հեռուստացույց կամ ռադիոընդունիչ։ Մարդիկ ձգտում են շատ բան իմանալ։ Սակայն ռադիոալիքները միաժամանակ մեզ են հասցնում. «Ազատ Եվրոպայի», «Ամերիկայի ձայնի», «բարեգործների» փսփսոցները։ Աշխատավոր մարդը միշտ չէ, որ կարողանում է բարեհնչուն ու գեղեցիկ բառերի ետև տեսնել իսկական հակակոմունիզմի երախը։ Այս ամենը բարձրացնում է մարդկանց պահանջները միջազգային կյանքի իրադարձությունների մասին ինֆորմացիայի նկատմամբ։ Ես հետաքրքրվեցի, թե Միշա Համբոյանը ինչպե՞ս է պատրաստում իր ելույթները կոլտնտեսականների համար։

Մարդկանց հետ հանդիպում եմ շաբաթը մեկ անգամ,— պատմում է քաղինֆորմատորը,— արտասահմանյան հիմնական իրադարձությունների մասին նրանք, իհարկե, արդեն լսած են լինում։ Ուստի ես աշխատում եմ ոչ թե պարզապես տեղեկություն տալ դրանց մասին, այլ համադրում եմ փաստերը, ընդգծում նրանց քաղաքական նշանակությունը։ Զրույցը հաջող եմ համարում, երբ ունկնդիրները շատ հարցեր են տալիս։ Ուստի պատրաստվում եմ ոչ թե սոսկ թեմայի սահմաններում, այլ մի փոքր ավելի ընդարձակ՝ հետս վերցնում եմ փաստեր, գրառված կարևոր կարծիքներ, թվային տվյալներ։ Նորերս պատմեցի ամերիկյան ագրեսորների դեմ վիետնամական ժողովրդի մղած հերոսական պայքարի մասին։ Այդ թեման հուզում է յուրաքանչյուր սովետական մարդու։ Ինձ հարցեր տվեցին վայր գցած ամերիկյան ինքնաթիռների թվի, նապալմի ազդեցության, պատերազմի վրա ԱՄՆ-ի կատարած ծախսերի մասին։ Բայց տվեցին նաև ավելի բարդ հարցեր։ Օրինակ, հարցրին, թե ինչո՞ւ ԱՄՆ-ը համաձայնել է բանակցություններ վարել Փարիզում։ Դրան երկու խոսքով չես պատասխանի։ Ահա թե ինչու քաղինֆորմատորը պետք է բազմակողմանիորեն պատրաստված լինի։ Ես սիստեմատիկորեն կարդում եմ «Правда», «Սովետական Հայաստան»,«Բանվոր» թերթերը, «Լենինյան ուղիով», «Ագիտատորի բլոկնոտ», «Политическое самообразование» հանդեսները։ Եվ, իհարկե, մեր հիմնական խորհրդատուները Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատություններն են։

Հայկավան գյուղի քաղինֆորմատորների աշխատանքի հետ մեր ծանոթացումն ավարտվեց կոլտնտեսային կուսկազմակերպության քարտուղար Վրույր Խլղաթյանի հետ ունեցած զրույցով։

Ինչպես նա ասաց, իրենց արդարացրել են քաղինֆորմատորների մասնագիտացումը, նրանց կատարած աշխատանքը։ Անընդհատ տեղի են ունենում մարդկանց հետ տարվող աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների որոնումներ, քաղաքական ինֆորմացիայի հետագա կատարելագործումը։ Քաղինֆորմատորները հաճախ հավաքվում են, պատմում իրենց պլանների մասին, միմյանց հաղորդակից դարձնում իրենց փորձին, գիտելիքներին։ Նրանց հետ պարբերաբար զրուցում են կուսակցական կազմակերպության քարտուղարը, գյուղսովետի նախագահը, նրանց իրազեկ են դարձնում կոլտնտեսության կուսկազմակերպության բյուրոյի որոշումների և գյուղական սովետի միջոցառումների մասին։

Տեղերում քաղինֆորմատորներին ռեալ օգնություն է ցույց տալիս կուսակցության Ախուրյանի շրջկոմը. նորերս այնտեղ անց է կացվել քաղինֆորմատորների սեմինար, ուր զեկուցումներով հանդես եկան շրջկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի վարիչ Ա. Նիկողոսյանը և քաղլուսավորության կաբինետի վարիչ Ա. Եղիազարյանը։ Նրանք հիմնական ուշադրությունը կենտրոնացրել են այն բանի վրա, թե ինչպես ավելի օպերատիվ, բովանդակալից և ունկնդիրներին ավելի մատչելի դարձնել քաղինֆորմատորների ելույթները։

Կարծում եմ, որ պետք է սիստեմատիկ դարձնել այդպիսի սեմինարները։ Զեկուցողների կարելի է հրավիրել նաև հարևան շրջաններից, մայրաքաղաքից, որպեսզի պատմեն հանրապետությունում կուտակված փորձի մասին։ Շրջկոմի սեմինարում քաղինֆորմատորները, բացի փորձն ուսումնասիրելուց, կուսակցական ու սովետական մարմինների միջոցառումներին ծանոթանալուց, պետք է սովորեն համեմատել և վերլուծել փաստերը, ծանոթանալ աշխատավորների առջև հրապարակային ելույթների մեթոդիկայի հիմունքներին։

Քաղինֆորմատորներն ունեն նաև այլ, ավելի կոնկրետ հոգսեր։ Դրանցից հիմնականը՝ շրջանի, հանրապետության կյանքի վերաբերյալ կենդանի ինֆորմացիայի պակասությունն է։ Շատ անգամ քաղինֆորմատորները հնարավորություն չունեն իրենց կոլտնտեսության ցուցանիշները համեմատելու հարևան կոլտնտեսությունների ցուցանիշների հետ։ Միգուցե պետք է մտածել հատուկ ինֆորմացիոն բյուլետենի հրատարակության մասին, կամ ավելի լայնորեն հաշվի առնել քաղինֆորմատորների պահանջները՝ «Ագիտատորի բլոկնոտ»-ի էջերում ավելի շատ տեղեկատու նյութեր հրապարակելով։

Վ. Ա. ԴԱՆԻԼՈՎ

## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՄԵՆՔ ԱՊՐՈՒՄ ԵՆՔ

Տարիներ առաջ, երբ Օրջոնիկիձեի շրջանի № 4 բնակարանային կառավարչությունում ստեղծվեց սկզբնական կուսկազմակերպություն և նրանում համախմբվեցին կառավարչության սիստեմում աշխատող, ինչպես նաև նրա տերիտորիայում բնակվող կուսանդամ-թեկնածուները, շատերին դեռևս հրստակորեն պարզ չէր նրա գործունեության ոլորտը, պրակտիկ անելիքները: Ոմանք նույնիսկ կարծում էին, թե կենսաթոշակառու կոմունիստներին կազմակերպության մեջ են համախմբում նրանց հանգիստը կազմակերպելու համար: Մինչդեռ մեր կուսկազմակերպության վերջին տարիների աշխատանքի փորձով կրկին համոզվեցինք, որ 55—60 տարին բոլորած առողջ մարդու համար լավագույն հանգիստը կուսակցական-հասարակական աշխատանքին ակտիվ մասնակցելն է, կոմունիստական շինարարությանը հաղորդակից լինելը:

Ներկայումս մեր կուսկազմակերպությունում միավորված են 85 կոմունիստ, որոնցից 7-ը տնային կառավարչության աշխատողներ են, 78-ը՝ կենսաթոշակառուներ: Սկզբնական շրջանում մենք կուսժողովներում և կուսբյուրոյի նիստերում քննության էինք առնում գլխավորապես տնային կառավարչությանը վերաբերող հարցեր: Պարզ է, որ օրակարգի հարցերի միապաղաղությունը չէր կարող բավարարել աշխատանքի տարբեր տեղամասերից եկած, տարբեր նախասիրություններ ունեցող կենսաթոշակառու կոմունիստներին: Բանը հասավ նրան, որ վերջիններից ոմանց մոտ միտք ծագեց վերադառնալ իրենց նախկին արտադրական-հիմնարկային կուսկազմակերպությունը:

Որոշ ժամանակ անց, հաշվի առնելով կոմունիստների ցանկությունները, հարկ եղավ վերակառուցել կուսկազմակերպության աշխատանքը, այն տանել ավելի լայն հունով, որպեսզի բոլորի համար լինի հետաքրքիր: Ամենից առաջ մենք ընդլայնեցինք քննարկվող հարցերի շրջանակը. կուսակցական ժողովներում պարբերաբար քննարկման դրինք վերադաս կուսակցական կոմիտեների կողմից առաջադրվող, ինչպես նաև սեփական նախաձեռնությամբ բարձրացվող նոր հարցեր: Շնորհիվ դրան, որոշակիորեն բարձրացավ կոմունիստների հետաքրքրությունը և նրանք ակտիվ աշխատանքի լծվեցին: Այժմ նույնիսկ աշխատանքի անցած կենսաթոշակառուները գերադասում են մնալ մեր կուսկազմակերպությունում:

Իհարկե, տնային կառավարչությունը, որը մեր հիմնական արտադրությունն է, մնաց կուսկազմակերպության ամենօրյա ուշադրության կենտրոնում: Մենք այժմ ավելի մոտիկից ենք զբաղվում նրա տնտեսությամբ, բայց չենք սահմանափակվում զեկուցումներ, ինֆորմացիաներ լսելով: Կուսակցական կազմակերպության գործնական օգնությամբ կառավարչությունը որոշակի



աշխատանք է կատարում բնակելի ֆոնդերի պահպանման, շրջապատի ու բակերի բարեկարգման, բնակչության կուլտուրական սպասարկման և այլ բնագավառներում:

Կառավարչության գործունեությունն է՛լ ավելի բարելավելու նպատակով վերջերս կազմակերպել ենք տնային կոմիտե, որի կազմում ընդգրկված են հեղինակավոր կոմունիստներ Ս. Սուքիասյանը, Ա. Փափախչյանը, Ա. Շագոյանը, Հ. Գրիգորյանը (պահեստի գնդապետ) և ուրիշներ: Կոմիտեի առաջին գործը եղավ Հոկտեմբերյան պողոտայի № 20 շենքի բակի կարգավորումը (որը երկար տարիներ անուշադրության էր մատնված) և կաթսայատները ձմռան նախապատրաստելը:

Տնային կառավարչության տերիտորիայում գործում են 4 թաղային կոմիտե: Որպես թաղային կոմիտեների նախագահներ և անդամներ լավ են աշխատում կոմունիստներ Պ. Սարգսյանը, Հ. Մուրադյանը, Շ. Պարանյանը, Ե. Համբարձումյանը և Հ. Օհանյանը: Կուսկազմակերպության բյուրոն սիստեմատիկաբար օգնում է տնային և թաղային այդ կոմիտեներին, բարելավում բնակչության սպասարկումը:

Շնորհակալ գործ են կատարում այն թաղային կոմիտեները, որոնց նախագահներն են Վ. Մարուխյանն ու Ռ. Հակոբյանը: Այս ընկերները մեր կուսկազմակերպության անդամներ չեն, բայց որպես մեր թաղամասի բնակիչներ, օգնում են մեզ: Այդ թաղային կոմիտեների նախաձեռնությամբ նախկին «Շիլաչի» կոչվող թաղամասի շենքերի շրջակայքը այժմ կուլտուրական տեսք է ընդունել: Նորակառույց շենքերի բակերը կանաչապատված և ծաղկապատված են: Կոմիտեները անողոք են հասարակական կարգը, սովետական համակեցության կանոնները խախտողների նկատմամբ. բնակչության հանգիստը խանգարող ոչ մի դեպք չի վրիպում նրանց ուշադրությունից: Նրանք լրջորեն զբաղվում են նաև մատաղ սերնդի դաստիարակության հարցերով: Բակային ճամբարների ամառային աշխատանքի կազմակերպումը նրանց հոգածության առարկան է: Անցած ամռանը այդ ճամբարներում հանգստացել են ավելի քան 300 երեխա: Կոմունիստներ Մարուխյանն ու Հակոբյանը կարողացել են միջոցներ ստեղծել ճամբարի երեխաների սննդի կազմակերպման համար:

Կուսկազմակերպությունը 1969 թ. լսել է բոլոր թաղային կոմիտեների, ինչպես նաև ընկերական դատարանների նախագահների ինֆորմացիաները և միջոցներ ձեռնարկել նրանց գործունեության բարելավման համար:

Մեր կուսկազմակերպության անդամները բնակվում են տարբեր թաղերում, նրանց հավաքելը, որևէ միջոցառման մասնակից դարձնելը կապված են դժվարությունների հետ: Դրա համար էլ մեզ մոտ սահմանված է ժողովների միասնական օր (ամեն ամսի 20-ին, երեկոյան ժամը 6-ին): Հատուկ օրեր ու ժամեր են նախատեսված կուսբյուրոյի նիստերի, կոմունիստների ընդունելության, կուսանդամավճարների մուծման և այլ աշխատանքների համար: Կոմունիստները գիտակցական վերաբերմունք են դրսևորում իրենց պարտականությունների կատարման գործում, օրինակ հանդիսանում հասարակական աշխատանքում:

Կուսբյուրոն լուրջ ուշադրություն է նվիրում կուսակցական ժողովների խնամքով նախապատրաստմանն ու բարձր մակարդակով անցկացմանը: Քննարկման դրվող հարցերի մասին նախնական զրույցներ են անցկացվում կոմունիստների հետ, հաշվի առնում նրանց կարծիքը: Այժմ բազմազան են կուսժողովներում քննարկվող հարցերը: 1969 թ., բացի տնային կառավարչության,

թաղային կոմիտեներին, ներկուսակցական աշխատանքին վերաբերող հարցերից, մենք քննության ենք առել «Սոցիալիստական սեփականության պահպանումն ապահովելու ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» ՀԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, լսել զեկուցումներ միջազգային-քաղաքական թեմաներով։ Հարցերի քննարկմանն ակտիվ մասնակցում են կոմունիստներ Ս. Ղուկասյանը, Ռ. Հակոբյանը, Լ. Ազաբեկյանը, Մ. Կիրակոսյանը, Ե. Մանուկյանը և շատ ուրիշներ։ Նրանք իրենց քննադատական դիտողություններով ու առաջարկություններով օգնում են կազմակերպությանը՝ լուծելու կարևոր խնդիրներ։

Տնային կառավարչության կոմունիստներն ու բոլոր աշխատողները մեծ հետաքրքրությամբ լսեցին մեծանուն բանաստեղծ Հովհաննես Թումանյանի և հայ հանճարեղ կոմպոզիտոր Կոմիտասի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ կազմակերպված դասախոսություններն ու զեկուցումները։ Ընդառաջելով նրանց ցանկություններին, մենք այժմ դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ ենք կազմակերպում կոմունիստական կուսակցության հանճարեղ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված թեմաներով։

Թոշակառու կոմունիստները ջանում են ամեն կերպ օգտակար լինել կյանքին, բարեխղճորեն կատարել կուսակցական հանձնարարությունները։ 1917 թ. կոմունիստ, կուսբյուրոյի անդամ Շիրման Պարանյանը ժողովրդական վերահսկողության կոմիտեին օգնող խմբի նախագահն է, տնային կոմիտեի անդամ։ Պատկառելի տարիք ունեցող այդ հարգարժան ընկերն իր բոլոր ուժերը նվիրաբերում է ընդհանուր գործին։ 43 տարուց ավելի կուսստաժ ունի հանրապետական կարգի անհատական թոշակառու Միհրան Կիրակոսյանը։ Նա իր ամբողջ գիտակից կյանքը նվիրել է կուսակցության վեհ գործին, եղել է կուսշրջկոմի առաջին քարտուղար, շրջգործկոմի նախագահ, կենսաթոշակի անցնելուց հետո չորս տարի անընդմեջ ղեկավարել է տնային կառավարչության սկզբնական կուսկազմակերպությունը, իսկ այժմ պատասխանատվության բարձր զգացումով է վարում տնային կառավարիչի պաշտոնը։ Որպես կուսբյուրոյի անդամ, ընկ. Կիրակոսյանն ակտիվորեն մասնակցում է կազմակերպության բոլոր միջոցառումներին, խելացի ու գործնական խորհուրդներով օգնում կուսկազմակերպությանը։

Կուսհանձնարարությունները մեծ եռանդով են կատարում կոմունիստներ Սաթիկ Ղուկասյանը, Սերոբ Սուքիասյանը (տնային կոմիտեի նախագահ), Սոնյա Ահարոնյանը (կուսբյուրոյի քարտուղարի տեղակալ, պատի թերթի խմբկոլի նախագահ), Համբարձում Մուրադյանը, Հովակիմ Օհանյանը, Պողոս Սարգսյանը, Հայկուշ Աղվանյանը և ուրիշներ։

Կոմունիստներից մի քանիսը ժողդատարանի ատենակալներ են և իրենց լավ են դրսևորում այդ պատվաբեր աշխատանքում։

Մեր կուսկազմակերպությունը, որը գործում է աշխատավորների բնակարանային-կենցաղային սպասարկման ոլորտում, իր աշխատանքում ունի նաև թերություններ, չլուծված հարցեր։

Ամենից առաջ, կուսկազմակերպությունը շատ է բազմամարդ, մեր պայմաններում հնարավոր չէ բոլորին ապահովել համապատասխան կուսհանձնարարություններով։ Բայց կուսշրջկոմը հաշվի չառնելով այդ, կենսաթոշակի անցած նորանոր կոմունիստներ է ուղարկում մեր կազմակերպություն։ Իհարկե, մենք կատարում ենք շրջկոմի ցուցումները. բոլոր կոմունիստներին ընդու-



նում ենք սրտաբաց։ Այսուհանդերձ լավ կլինի կենսաթոշակի անցած այն կոմունիստներին, որոնք ցանկանում են մնալ իրենց կուսկազմակերպություններում, ընդառաջել նրանց։ Դա մի կողմից լավ է իրենց՝ կոմունիստների համար, որովհետև նրանք երկար տարիներ աշխատել են այդ կոլեկտիվներում, լավ գիտեն արտադրությունը, հետևապես այնտեղ քննվող բոլոր հարցերը մոտ են իրենց սրտին։ Մյուս կողմից, կենսաթոշակի անցած մարդիկ տվյալ ձեռնարկության արտադրության վետերաններն են և իրենց խորհուրդներով կօգնեն երիտասարդ բանվորներին, կնպաստեն նրանց դաստիարակմանն ու ձևավորմանը։

Մեզ մտահոգություն պատճառող հարցերից մեկն էլ երիտասարդ կոմունիստներին կուսակցական կյանքում ներգրավելն է, նրանց օգտակար դարձնելը։ Այդպիսիների թիվը մեզ մոտ 10-ից ավելի է (գլխավորապես կանայք), որոնք ընտանեկան հոգսերի պատճառով ժամանակավորապես թողել են աշխատանքը։ Այժմ նրանք ցանկանում են աշխատել, բախում են հիմնարկությունների դռները, բայց անհրաժեշտ ուշադրության չեն արժանանում։ Իսկ մեր կուսբյուրոն հնարավորություն չունի նրանց օգնելու։ Նրանցից ոմանք շատ տեղին դժգոհում են, որ իրենց հնարավորություն չի տրվել աշխատանքային կոլեկտիվի կազմակերպությունում մնալու։ Այդ դեպքում նրանց աշխատանքի տեղավորելու հարցը ավելի դյուրին կլուծվեր։

Կենսաթոշակառուներին աշխատանքում օգտագործելու վերաբերյալ ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշումից հետո մեր կուսկազմակերպության անդամներից շատերը, մանավանդ նրանք, որոնց կենսաթոշակը ցածր է, ցանկանում են աշխատել։ Մարդիկ աշխատել են ուզում, ուստի պետք է օգնել նրանց։ Այստեղ անհրաժեշտ է շրջանային ղեկավարության ակտիվ միջամտությունն ու օգնությունը։

Մի հարց ևս։ Կուսակցական վերադաս օրգանների կողմից երաշխավորված բոլոր հարցերը մենք անպայման քննում ենք, անհրաժեշտ վերաբերմունք ցուցաբերում, ասում մեր խոսքը։ Բայց երբեմն երաշխավորվում են այնպիսի հարցեր, որպիսիք մեր կազմակերպությանը չեն վերաբերվում։ Օրինակ, մեզ ևս հանձնարարվեց քննարկել կոմերիտմիության մեջ տարվող աշխատանքը, մոռանալով, որ տնային կառավարչությունում կոմերիտականներ չկան։

Լավ կլիներ, որպեսզի շրջկոմները շերտավորված մոտեցում ցուցաբերեին սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարման հարցում, կենսաթոշակառու կոմունիստներին ևս պարբերաբար մասնակից դարձնեն քաղաքում անցկացվող կարևոր միջոցառումներին։

Կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կուսկազմակերպությունները պետք է առավել հոգատար վերաբերվեն թոշակառու մարդուն, զգացնել տան նրան, որ նա շարունակում է մնալ հասարակության ակտիվ, գործուն անդամը, որ նրա հարուստ կենսափորձը, հասարակական ակտիվ գործունեությունը անհրաժեշտ է մեր հասարակությանը։

ԱՐԱՔՍՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ

Օրջոնիկիձեի շրջանի № 4 բնակարանային կառավարչության կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՀՄ-ՈՒՄ[1]

*Մեր երկրի զարգացման արդի ժամանակաշրջանում՝ կոմունիստական հասարակարգի կառուցման փուլում, կարևորագույն խնդիր է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմության տեմպերի արագացումը: Տեխնիկական առաջադիմությունը՝ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը, տեխնիկայի ու տեխնոլոգիայի անընդհատ կատարելագործումը ապահովում են արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, հնարավորություն ընձեռում նորացնելու գործող մեքենաներն ու սարքավորումները, արտադրության մեջ կիրառելու նոր նյութեր, քիմիացնելու արտադրությունը: Տեխնիկական առաջադիմությունն անխզելիորեն կապված է հասարակական արտադրության արդյունավետության հետ: Հայտնի է, որ աշխատանքի արտադրողականության աճը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը մեծ մասամբ ապահովվում են տեխնիկական առաջադիմությամբ:*

*Վ. Ի. Լենինը նշել է, որ կոմունիզմն առաջավոր տեխնիկան օգտագործող բանվորների աշխատանքի արտադրողականության առավել բարձր աստիճանն է կապիտալիստականի համեմատությամբ, որ «...հաղթում է նա, ով ունի մեծագույն տեխնիկա...» (Երկեր, հ. 27, էջ 226):*

*Վ. Ի. Լենինը երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման սկզբնական շրջանում նշել է, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինման հիմքն են ծանր արդյունաբերության վերականգնումն ու զարգացումը: «Առանց ծանր արդյունաբերությունը փրկելու,— ասել է նա,— առանց այն վերականգնելու, մենք չենք կարող կառուցել ոչ մի արդյունաբերություն, իսկ առանց ծանր արդյունաբերության մենք ընդհանրապես կկործանվենք որպես ինքնուրույն երկիր» (Երկեր, հ. 33, էջ 506): Կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում ղեկավարվել է լենինյան այս ցուցումներով: Սոցիալիստական ինդուստրացման և առաջին հնգամյակների տարիներին կուսակցությունն անդուլ հոգ է տարել, այժմ էլ հոգում է արտադրամիջոցների արտադրության առավել զարգացման համար, քանի որ այդ միջոցներն են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, տեխնիկական առաջադիմության արագացման և այդ հիման վրա՝ հասարակական աշխատանքի ամենաբարձր արտադրողականության ապահովման հիմքը:*

*Ամբողջ երկրի ինդուստրացումը, հնգամյա պլանների հաջող կատարումն ապահովեցին ՍՍՀՄ էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպեր: Երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը քառասուն տարում (1929—1968 թթ.) մեծացավ 66, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ գրեթե 14 անգամ: Դրա նշանակությունը կարելի է ցույց տալ թեկուզ հետևյալ օրինակով: Եթե աշխատանքի արտադրողականությունը երկրում մնար 1928 թ. մակարդակին, ապա արդյունաբերական-արտադրական անձնակազմն այժմ պետք է լիներ 400 միլիոն մարդ, մինչդեռ 1968 թ. արդյունաբերության ոլորտում աշխատողների թիվը 30 միլիոն էր: Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունն այդչափ մեծ նշանակություն է տալիս տեխնիկական առաջադիմության տեմպերին:*

*Վ. Ի. Լենինը առանձնահատուկ ուշադրություն է նվիրել երկրի էլեկտրիֆիկացմանը: Միայն էլեկտրիֆիկացմամբ կարելի է ապահովել տեխնիկական առաջադիմությունը, բարձրացնել աշխատանքի էլեկտրազինվածությունը, հետևաբար և արտադրողականությունը:*

*Կուսակցությունը միշտ ելել է լենինյան այն ցուցումից, որ նոր, կոմունիստական հասարակարգը ՍՍՀՄ-ում կհաղթի միայն մեքենական խոշոր ինդուստրիայի ստեղծման և ամբողջ երկրի էլեկտրիֆիկացման հիման վրա: «Միայն այն ժամանակ, երբ երկիրն էլեկտրիֆիկացվի,— ասել է Վ. Ի. Լենինը,— երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնականապես» (Երկեր, հ. 31, էջ 654): Նրա նախաձեռնությամբ մշակվեց ժողովրդատնտեսական առաջին դիրեկտիվ պլանը՝ ԳՈԷԼՌՕ-ն, որի հաջող կատարումը, հնգամյա պլանների իրականացման հետ միասին, նախադրյալներ ստեղծեց երկրի էկոնոմիկայի բուռն զարգացման համար:*

*ՍՍՀՄ-ում սովետական իշխանության տարիներին գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա ստեղծվեց ժամանակակից էլեկտրաէներգետիկ բազա: Եթե 1928 թ. երկրում արտադրվել է 5 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1968-ին՝ 638 միլիարդ կիլովատ-ժամ կամ 128 անգամ ավելի: ՍՍՀՄ-ում 1968 թ. մեկ բնակչին ընկնում էր 2683 կվտ-ժամ էլեկտրաէներգիա, մինչդեռ 1928 թ. այդ ցուցանիշը կազմել է ընդամենը 33 կվտ-ժամ: 1968 թ. մեր երկրում արտադրվեց երեք անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան Անգլիայում, մինչդեռ 1928 թ. արտադրվել էր Անգլիայից 3,5 անգամ պակաս:*

*Ներկայումս մեզ մոտ ավտոմատացված են բոլոր հիդրոէլեկտրակայանները: Արդյունաբերության մեջ հիմնականում ավարտված է ֆիզիկական ուժ պահանջող աշխատանքների էլեկտրիֆիկացումը: Էլեկտրամոտորների ընդհանուր կարողությունը 1928 թ. համեմատությամբ, 1965 թ. աճել էր ավելի քան 60 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի սպառումը ֆիզիկական ուժ պահանջող աշխատանքներում՝ 2,8-ից հասել է 198,2 միլիարդ կվտ-ժամի: Էլեկտրաէներգիան այժմ լայնորեն կիրառվում է ձուլման, ջեռուցման, թրծման և այլ տեխնոլոգիական պրոցեսներում: Այն օգտագործվում է նաև սովխոզների ու կոլտնտեսությունների արտադրության մեջ: 1940—1966 թթ. էլեկտրաէներգիայի սպառումը գյուղատնտեսության մեջ աճել է 43 անգամ: Տրանսպոր-*

[1] Հոդվածը գրված է «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրության հանձնարարությամբ:

տում մինչև 1966 թ. էլեկտրիֆիկացված էր 25 հազար կմ երկաթուղի, կամ բոլոր երկաթուղիների 19 տոկոսը։ Այն լայնորեն կիրառվում է կենցաղում։ 1965 թ. քաղաքներում ու գյուղերում 58 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա է օգտագործվել կոմունալ տնտեսության և կենցաղային կարիքների համար, իսկ 1913 թ. միայն 0,4 միլիարդ կվտ-ժամ։ Այսպիսով, կարող ենք ասել, որ ժամանակակից տեխնիկայի զարգացումն անհնար է առանց էլեկտրաէներգիայի կիրառման։ Միայն էլեկտրիֆիկացման հիման վրա կարելի է կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման ու քիմիացման ենթարկել արտադրությունը։

Վ. Ի. Լենինը հսկայական նշանակություն է տվել արտադրության մեքենայացմանը և ավտոմատացմանը որպես մեր երկրում տեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղությունների։ «Ձեռքի աշխատանքը մեքենայական աշխատանքով փոխարինելու մեջ... է մարդկային տեխնիկայի ամբողջ պրոգրեսիվ աշխատանքը,— ասել է նա։ Որքան ավելի է զարգանում տեխնիկան, այնքան ավելի է արտամղվում մարդու ձեռքի աշխատանքը, մի շարք ավելի ու ավելի բարդ մեքենաներով փոխարինվելով» (Երկեր, հ. 1, էջ 115)։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի այս ցուցումներով, կուսակցությունը և կառավարությունը կոմունիստական շինարարության բոլոր փուլերում առաջնահերթ նշանակություն են տվել արտադրության մեքենայացմանն ու ավտոմատացմանը։ Վերջին տասը տարում ՍՍՀՄ-ում ստեղծվել են մոտ 30 հազար տիպի նոր մեքենաներ ու սարքավորումներ և ավելի քան տասը հազար տեսակ նոր սարքեր։ Երկրի ձեռնարկություններում այժմ գործում են մոտ 75 հազար մեքենայացված հոսքային և ավտոմատացված գծեր։ Ամեն տարի տեղակայվում են 6 հազար նոր մեքենայացված հոսքային և ավտոմատացված գծեր։ Միայն մեքենաշինության ձեռնարկությունների համար անցած յոթնամյակում կառուցվել են ավելի քան 1300 ավտոմատ գիծ։ Զգալիորեն բարձրացել է դրանց արտադրողականությունը։ Այսպես, եթե առաջ դրանք ժամում մշակում էին 20—25-ից ոչ ավելի խոշոր դետալներ, ապա այժմ նոր մեքենաները հնարավորություն են ընձեռում մշակելու մինչև 100—120 դետալ։ 1955 թվականից մեր երկրի առանցքակալների պետական առաջին գործարանում հաջողությամբ աշխատում է գնդիկավոր և հոլովակավոր առանցքակալների պատրաստման առաջին ավտոմատ արտադրամասը։ ՍՍՀՄ-ում առաջին անգամ Կույբիշևի «Ավտոտրակտորոդետալ» գործարանում է ստեղծվել տարեկան 10 միլիոն փական արտադրող կոմպլեքսային մեքենայացված արտադրամասը։

Ներկայումս ավելի լայնորեն են օգտագործվում ռոտորային տիպի ավտոմատ գծերը։ Սրանք շատ համալիր են, ավելի քիչ արտադրական տարածություն են պահանջում նախկին սարքավորումների համեմատությամբ։ Ռոտորային ավտոմատ գծերի կիրառումն ավելի նպատակահարմար է մասսայական արտադրության մեջ՝ դրոշմոցների, ձուլարանային արտադրամասերում, պլաստմասսաների, կերամիկական, մետաղա-կերամիկական, ռետինե առարկաների, ապակու, հախճապակու արդյունաբերության մեջ, էլեկտրո և ռադիո-տեխնիկայում, սարքաշինության մեջ և արդյունաբերության այլ ճյուղերում։ Ներկայումս արդյունաբերության ոլորտում օգտագործվում են ավելի քան 150 տարբեր ավտոմատ գծեր, որոնք առանց մարդու միջամտության կատարում են տեխնոլոգիական 10—12 գործողություն, յուրաքանչյուր րոպեում տալով 30—160 միավոր արտադրանք։



Ավտոմատացված արտադրությունը կգլխավորեն հերթապահ մեխանիկ-
ները, էլեկտրիկները, գործիքային բլոկների կարգավորողները։ Այս մասնա-
գիտությունները պահանջում են տեխնիկական գիտելիքներ։ Բանվորին մնում
է հսկել և կարգավորել ավտոմատացված արտադրությունը։ Այսպես, Մոսկ-
վայի ժամացույցների երկրորդ գործարանի «ՁՆ—113Մ—1» կամրջակների
պլատինի մշակման ավտոմատացված տեղամասում 34 բանվորից 12-ն ունեն
միջնակարգ և բարձրագույն մասնագիտական կրթություն, 10-ը առանց ար-
տադրությունից կտրվելու սովորում են, որոնցից երեքն ինստիտուտում, երկու-
սը՝ տեխնիկումում։ Այսպիսով, ավտոմատ գծերի կարգավորող-օպերատոր-
ներն իրենց որակավորումով մոտենում են միջնակարգ տեխնիկական կրթու-
թյուն ունեցող մասնագետի մակարդակին։

Սակայն միայն հիմնական տեխնոլոգիական պրոցեսների բարելավումը
կարող է ճեղքվածք առաջացնել հիմնական և օժանդակ աշխատանքների մե-
քենայացման մակարդակների միջև։ Ուստի, ամեն կերպ պետք է խրախուսել
երկրի առաջավոր ձեռնարկությունների փորձն՝ օժանդակ աշխատանքների
մեքենայացման բնագավառում։ Լիխաչովի անվան ավտոգործարանում մեծ
տապես հոգ են տանում տրանսպորտա-պահեստային և բեռնման-բեռնաթափ-
ման աշխատանքների մեքենայացման համար։ Ավելի քան ութ տարի է, ինչ
ձեռնարկությունը վերակառուցվում է։ Առաջին հերթին ավարտվեցին ԶԻԼ—130
ավտոմեքենայի ստեղծման աշխատանքները։ Այժմ գործարանում յուրացվում
է նոր մոդելի մեքենաների թողարկումը։ Վերակառուցման սկզբից մինչև այժմ
ձեռնարկությունում ստեղծվել են համալիր մեքենայացված տասնհինգ գոր-
ծամասեր, արմատավորվել 157 ավտոմատ և 184 հոսքային մեքենայացված
գծեր, հարյուրավոր առանձին ավտոմատներ և կիսաավտոմատներ։ Այդպես է
ընթանում հիմնական արտադրության մեքենայացումը։ Բայց դրա հետ մեկ-
տեղ ձեռնարկությունում լայնորեն արմատավորում են օժանդակ գործողու-
թյունների մեքենայացման միջոցները։ Վերջին չորս տարում ներգործարանա-
յին փոխադրումների մեքենայացման մակարդակը բարձրացել է ավելի քան
80 տոկոսով։ Գործող կոնվեյերների ընդհանուր երկարությունը ձեռնարկու-
թյունում 65 կմ է, իսկ վերակառուցման վերջին փուլի ավարտումից հետո այն
կհասնի 180 կմ։ Օժանդակ աշխատանքների մեքենայացման արդյունավե-
տության մասին են վկայում հետևյալ թվերը. տրանսպորտային-պահեստային
աշխատանքներում զբաղված մեկ բանվորին մեքենայով փոխարինելու համար
երեք անգամ քիչ ծախս է պահանջվում, քան հիմնական արտադրության մեկ
բանվորին փոխարինելու համար։ Գործարանը երեք տարում ստացել է 2,4 մի-
լիոն ռուբլի պայմանական խնայողություն, 5,8 միլիոն ռուբլու ծախսի դիմաց։

Արտադրության մեքենայացման համար մեծ նշանակություն ունի ծրա-
գրային կառավարմամբ մետաղամշակման հաստոցների արմատավորումը սե-
րիական և անհատական արտադրության մեջ։ Արագությունների և աշխա-
տանքային մատուցումների ծրագրային կառավարման սիստեմի արմատա-
վորմամբ այդ գործողությունները կկատարվեն առանց բանվորի անմիջական
միջամտության։ Այդպիսի սարքավորումը դետալը պատրաստում է ավտոմատ։
Միայն 1966 թ. պատրաստվել է ծրագրային կառավարման շտեկերային (պա-
նելային) սիստեմներով մոտ 4 հազար հաստոց։ Գորկու ֆրեզերային հաս-
տոցների գործարանում ծրագրային կառավարմամբ ուղղահայաց ֆրեզերա-
յին հատուկ հաստոց է արմատավորվել մատուցումների և փոխարկիչների
տուփերում դետալների չփվող մակերեսների վերջնական ֆրեզերման համար։

Դա թույլ է տվել հղկողի աշխատանքը մեքենայացնել և արտադրողականությունը բարձրացնել 1,5—2 անգամ։

Տեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղություններից մեկն է առավել մեծ տնտեսական արդյունք ապահովող առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումը։ Առաջադիմական տեխնոլոգիայի առավելությունների մասին է վկայում թեկուզ հետևյալ փաստը. պողպատե և չուգունե խոշոր ձուլակտորների պատրաստման գործում արագ կարծրացող կաղապարաշաղախների և կաղապարաձողերի շաղախների օգտագործմամբ կաղապարողների աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է 20—30 տոկոսով, կաղապարների և կաղապարաձողերի չորացման ժամանակը կրճատվում 10—15 (տարբեր ձուլվածքների համար), ձուլվածքների պատրաստման ընդհանուր ցիկլը՝ 1,5—2 անգամ և մեկ քառակուսի մետր արտադրական տարածության հաշվով ձուլվածքի ծավալը ավելանում 30—40 տոկոսով։ Ձուլվող մոդելներով մեկ տոննա դետալներ արտադրելիս խնայվում է 2 տոննա գլանվածք։

Պակաս կարևոր նշանակություն չունի դարբնոցամամլային աշխատանքների տեխնոլոգիայի կատարելագործումը։ Հաշվարկները ցույց են տվել, որ ազատ կռման փոխարեն թերթադրոշմում, ծավալային սառը և կիսատաք դրոշմումն արմատավորելիս, նախապատրաստուկների արտադրության աշխատատարությունը կրճատվում, 50-ից հասնում է 15-ի, իսկ մեխանիկական մշակման աշխատատարությունը՝ 250—80 նորմա-ժամի։

Հատումը կռմամբ և դրոշմամբ փոխարինելու դեպքում մետաղի խնայողությունը միջին հաշվով հասնում է 15—25 տոկոսի, իսկ աշխատանքային ծախսումները կրճատվում են 20 տոկոսով։ Դարբնոցա-մամլային մեկ մեքենան փոխարինում է 3,7 մետաղահատ հաստոցի։ Դետալների պատրաստման ընդհանուր ժամանակը կրճատվում է 30 տոկոսով։

Առավել առաջադիմական մեթոդներից է գլոցումը, որի դեպքում ստացվում են իրենց ձևով պատրաստի արտադրանքին շատ մոտ դետալներ։ Հորիզոնական, հորիզոնական-պտուտակաձև և հորիզոնական-պրոֆիլային գլոցման շնորհիվ ստացվում են պողպատե գնդեր, շրջանակներ, սռնիներ և այլն։ Խոշորամոդուլ ատամնանիվների պատրաստման նոր պրոցեսի և դրա համալիր սարքավորումների ստեղծման համար մետալուրգիական մեքենաշինության համամիութենական և ավտոմոբիլային արդյունաբերության տեխնոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտների մի խումբ գիտնականներ 1966 թվականին արժանացան լենինյան մրցանակի։

Իսկ ո՞րն է նոր պրոցեսի առավելությունը։ Եթե առաջ ատամնանիվները ատամնամշակող հաստոցների վրա պատրաստվում էին հատման մեթոդով և մետաղի 45 տոկոսը տաշեղի էր վերածվում, ապա գլոցման մեթոդի կիրառման դեպքում ատամնանիվը պատրաստվում է 1,5 րոպեում (նախկին 20—30 րոպեի փոխարեն). այդպիսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է տասնյակ անգամ, խնայվում զգալի քանակությամբ մետաղ (թափոնը խիստ կրճատելու շնորհիվ)։ Որակի բարձրացման հետ մեկտեղ 25 տոկոսով երկարաձգվում է ատամնանիվների ծառայության ժամկետը։

Մոսկվայի «Ֆրեզեր» գործարանում, սեկտորային գլոցման մեթոդով շաղափիչների արտադրությունն ավելացնելու հաշվին, ապահովվել է մետաղի 45 տոկոս խնայողություն։ Տաք վիճակում որդնյակավոր ֆրեզների նախապատրաստուկներ գլոցելու համար ստեղծված հաստոնը, որը նախագծվել է մե-



տալուրգիական արդյունաբերության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է 10—20 անգամ, արագ հատող պողպատի ծախսերը կրճատում 15—20 տոկոսով։

Նոր սարքավորում արմատավորելու, մետալուրգիական արտադրության տեխնոլոգիան ու բովախառնուրդի նախապատրաստումը բարելավելու շնորհիվ, սև մետալուրգիայի ձեռնարկություններում դոմնային վառարանների օգտակար ծավալի օգտագործման գործակիցը 1965 թ. 0,637-ի դիմաց 1968 թ. հասցվեց 0,671-ի։ Մեկ տոննա չուգունի արտադրության վրա 1965 թ. ծախսված 633-ի փոխարեն 1967 թ. ծախսվեց 601 կգ կոքս։ Ենթադրվում է, որ այդ ցուցանիշը 1970 թ. 560 կիլոգրամից չի գերազանցի։ Միայն կոքսի խնայողությունից 1966—1967 թթ. տնտեսվեց մոտ 100 միլիոն ռուբլի (չհաշված կցորդման բնագավառի լրիվ ծախսերը)։

Ներկայումս տեխնիկական առաջադիմության կարևորագույն ուղղություններից մեկն է ժողովրդական տնտեսության քիմիացումը. այդ նշանակում է քիմիական նյութերի և մեթոդների լայն կիրառում նյութական արտադրության բոլոր ոլորտներում։ Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը և ժողովրդական տնտեսության քիմիացումը հնարավորություն են ընձեռում արագ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և շեշտակիորեն ավելացնել արտադրանքի քանակը։ Այսպես, թթվածնի կիրառումը մարտենյան վառարաններում դրանց հզորությունը մեծացնում է 1,5—2 անգամ, միաժամանակ կրճատելով վառելիքի ծախսումները։ Թթվածնի կիրառման հիման վրա ստեղծվել է պողպատը թթվածնային կոնվերտորներում ստանալու ժամանակակից առաջադիմական պրոցեսը։ Պողպատը կոնվերտորային եղանակով ձուլելիս աշխատանքի արտադրողականությունը 10—20 տոկոսով բարձր է, իսկ տեսակարար կապիտալ ներդրումները 30—40 տոկոսով (մարտենյան վառարանների համեմատությամբ) ցածր են։

Քիմիան մեծ ազդեցություն ունի մեքենաշինության և շինարարության տեխնիկական առաջադիմության վրա։ Օրինակ, պլաստմասսաներից արտադրանք պատրաստելու համար 7—8 անգամ քիչ աշխատանք է ծախսվում, քան մետաղից, իսկ ամրության տեսակետից որոշ պլաստմասսաներ պողպատին չեն զիջում, չնայած մի քանի անգամ թեթև են մետաղից։ Պլաստմասսաներից և պոլիմերային այլ նյութերից պատրաստված դետալներն էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ մի շարք դեպքերում փոխարինում են հանրահայտ մետաղներին։ Պետք է ասել, որ սինթետիկ ձյութերի և զանազան պլաստմասերի արտադրությունը ներկայումս զարգանում է արագ թափով։ Եթե 1960 թ. դրանցից արտադրվել է 312 հազար տոննա, ապա 1968-ին՝ 1293 հազար տոննա։

Քիմիական նյութերի լայն օգտագործումը շինարարության մեջ նպաստում է աշխատանքի խնայողությանը, շինարարական աշխատանքների արագացմանը և որակի բարելավմանը։

Հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների լայն կիրառումը գյուղատնտեսության մեջ գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի, աշխատանքի բարձր արտադրողականության ապահովման կարևորագույն ուղիներից մեկն է։ Հանքային պարարտանյութերի արտադրությունը 1960 թ. 13,9 միլիոն տոննայի դիմաց 1968 թ. հասավ 43,4 միլիոն տոննայի (պայմանական միավորներով)։ Այսպիսով, հանքա-

չափով։ Երեք տարվա ընթացքում արդեն կուտակվել է 6 միլիարդ 852 հազար ռուբլի։

Վերջին տարիներին մեծ աշխատանք է տարվում մեր երկրում արտոնագրային ֆոնդի ցանցի ստեղծման ասպարեզում, որը կարևոր նշանակություն ունի հայրենական արտադրանքի արտահանման գործում։ Մեր կուսակցությունն ու կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում պատենտալիցենզիոն աշխատանքների զարգացմանը։ Տարեցտարի աճում է արտասահմանում արտոնագրված սովետական գյուտերի թիվը։

Սովետական գիտնականներն ու գյուտարարները գիտությունը և տեխնիկան հարստացրին փայլուն նվաճումներով, որոնք հսկայական դեր խաղացին ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման գործում և հնարավորություն ընձեռեցին լուծելու ամենաբարդ տեխնիկական խնդիրները։

Հայրենական գիտությունը մեծ հաջողությունների է հասել էներգետիկայի, միջուկային ֆիզիկայի, տիեզերական տարածությունների ուսումնասիրման, կիբեռնետիկայի և գիտության ու տեխնիկայի այլ ասպարեզներում։ Չկա ժամանակակից գիտության ու տեխնիկայի մի բնագավառ, որտեղ սովետական գյուտարարները հասած չլինեն փայլուն հաջողությունների. նրանցից շատերը փառքով պսակեցին ոչ միայն սովետական, այլև համաշխարհային գիտությունն ու տեխնիկան։ Աշխարհին հայտնի են գիտնական գյուտարարների՝ ակադեմիկոսներ Ի. Կուրչատովի, Ս. Կորոլյովի, Ա. Տուպոլևի, Ն. Յակովլևի, Ե. Պատոնի և շատ ուրիշների անունները։ Սովետական հանրահռչակ գյուտարարներ են ոչ միայն գիտնականներն ու ինժեներները, այլև շատ բանվորներ։

Մեր երկրում գիտության և տեխնիկայի առաջընթացի համար լայն հնարավորություններ են ստեղծված։ Մոտ 2 միլիոն 900 հազար դիպլոմավորված ինժեներ ու գիտաշխատող կան ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում, բարձրագույն ուսումնական հաստատություններում, ակադեմիաներում, գիտահետազոտական ինստիտուտներում և նախագծային կազմակերպություններում։

Այժմ, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ աճում է գիտության և տեխնիկական առաջադիմության նշանակությունը, ավելի է մեծանում գյուտարարների ու ռացիոնալիզատորների դերը, նրանց ստեղծագործական աշխատանքը։ Այդ գործում մեծ նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1968 թ. սեպտեմբերի 24-ի «Գիտական հիմնարկությունների արդյունավետությունը բարձրացնելու միջոցառումների և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործումն արագացնելու մասին» որոշման հետևողական կենսագործումը։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Օգտագործելով սոցիալիստական կարգերի առավելությունները, Սովետական Միությունը լուրջ հաջողությունների է հասել ժամանակակից գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում։ Մենք առաջինն էինք, որ միջուկային էներգիան ի սպաս դրեցինք խաղաղ նպատակներին, առաջինը դուրս եկանք տիեզերք, հասանք ուրիշ շատ հիանալի նվաճումների, որոնց շնորհիվ Սովետական Միությունը տեղ գրավեց գիտատեխնիկական առաջընթացի առաջին շարքերում...»։

Գիտության և արտադրության արմատական մերձեցումը ժամանակի պահանջն է դարձել։ Անհրաժեշտ է ստեղծել բազմաթիվ նոր գիտական կենտրոններ և ուսումնական հաստատություններ, ավելի ընդլայնել գիտահետազոտական աշխատանքները և լայնորեն արմատավորել գիտության վերջին տվյալներով ու էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառմամբ կառուցված կառավարման սիստեմներ։

Փայլուն հաջողությունների է հասել նաև Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը, նրա էկոնոմիկան, գիտությունն ու կուլտուրան։ Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման գործում մեծ է գյուտարարների և ռացիոնալիզատորների ավանդը։ Նրանք գիտնականների



հետ միասին մեծ գործ են կատարում հայրենական գիտության զարգացման ասպարեզում։

Վերջին տարիներին հանրապետությունում լայն ծավալ է ստացել գյուտարարների և ռացիոնալիզատորների շարժումը։ Եթե 1957 թ. հաշվվում էր 4.529 գյուտարար և ռացիոնալիզատոր, ապա 1968 թ. նրանց թիվը հասավ 14.942-ի։ Արված առաջարկների թիվը 1957 թ. 7.000-ից հասավ 19.156-ի, տարեկան տնտեսական օգուտը՝ 3,5 միլիոն ռուբլուց 22 միլիոն 400 հազարի։ Միայն վերջին 10 տարում ներդրվել է 120 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն՝ 132 միլիոն ռուբլի տնտեսական օգուտով։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ինժեներներ Կ. Տեր-Հակոբյանի, Ն. Կարապետյանի, Հ. Եփրեմյանի ստեղծած նոր տիպի խառատային մշակման բազմակտրիչային հաստոցը արտոնագրվում է Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում, Հնդկաստանում, Ճապոնիայում, Եգիպտոսում, Արաբական Միացյալ Հանրապետությունում։

Էներգետիկայի հայկական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակից Պ. Մաթևոսյանի «Էներգոսիստեմի կայանների ակտիվ հզորությունների խնայողաբար բաշխման հաշվիչ սարքավորումը (գյուտը) արդեն արտոնագրվել է Ֆրանսիայում, Իտալիայում, Թուրքիայում, ընթացքի մեջ է ԱՄՆ-ում, Միացյալ Արաբական Հանրապետությունում և Անգլիայում։ Նման օրինակները շատ են։

Իրենց ռացիոնալիզատորական առաջարկություններով աչքի են ընկնում Լենինականի գուլպայի ֆաբրիկայի վարպետ Ա. Շիլաջյանը, Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատի փականագործ Ս. Մանեը, փորձնական էլեկտրատեխնիկական գործարանի փականագործ Ժ. Արաբյանը, կոմպրեսորների գործարանի խառատ, ներդրման հասարակական արտադրամասի պետ Ե. Հակոբյանը, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի փականագործ Ս. Բաբասյանը, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկայի գլխավոր մեխանիկ Դ. Ասատրյանը, «Երքիմշին» տրեստի փականագործների բրիգադավար Ս. Թերզյանը, Կիրովականի Մյասնիկյանի անվան կոմբինատի փականագործ Ն. Մելքոնյանը, Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի բանվորուհի Նադեժդա Ջանոյանը և շատ ուրիշներ։

Գյուտարարական և ռացիոնալիզատորական շարժման մեջ աշխատավորական լայն զանգվածներին ներգրավելու գործում մեծ դեր են կատարում արհմիությունները, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերությունը։ Մասսայական գյուտարարության զարգացման բոլոր աշխատանքները արհմիութենական կազմակերպությունները տանում են գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերության հետ մեկտեղ։ Անցած ժամանակաշրջանում արհմիությունների, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերության գործունեության հիմնական խնդիրներից մեկն էր՝ աշխատավորական լայն խավեր ընդգրկել տեխնիկական ստեղծագործության ոլորտում, գյուտարարների ու ռացիոնալիզատորների համար ստեղծել աշխատանքային լավ պայմաններ, օգնել նրանց, ինչպես նաև սոցիալիստական մրցություն ծավալել ժողովրդական տնտեսության մեջ գյուտարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից տնտեսման ֆոնդեր ստեղծելու համար։

Հայաստանի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները յոթնամյակի ռացիոնալիզատորական ֆոնդն են մուծել 75 միլիոն ռուբլի, 65 միլիոնի դիմաց, իսկ այս հնգամյակում կմուծեն 75 միլիոն ռուբլի, որի դիմաց 3 տարի 9 ամսում մուծված է 72,3 միլիոն ռուբլի։ Նրանք որոշել են այդ պարտավորությունը կատարել մինչև Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի օրը։

Գյուտարարների ու ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության կազմակերպություններն ակտիվ մասնակցում են գյուտարարական և ռացիոնալիզատորական աշխատանքների պլանավորմանը, իրականացնում են հասարակական վերահսկողության իրենց իրավունքները՝ նորարարական առաջարկությունների արմատավորման, ինչպես նաև հեղինակներին ճիշտ և ժամանակին վարձատրելու գործում։

է, սակայն ծխախոտի փորձարարական և ձեթ-օճառ կոմբինատներում ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների բաժինն անհամեմատ բարձր է նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների միջին մակարդակից, իսկ բանվորների բաժինը ծխախոտի փորձարարական կոմբինատում և գարեջրի գործարանում չի անցնում միջին ճյուղային ցուցանիշից։

Այս երևույթն ավելի պարզ է դրսևորվում, երբ համեմատում ենք առանձին կատեգորիաների աշխատողների տարիֆային (հաստիքային) աշխատավարձի և ստացած պարգևի միջև ստեղծված հարաբերակցությունը։ Ուսումնասիրված ձեռնարկությունների մեծ մասում ինժեներա-տեխնիկական աշխատողների հաստիքային աշխատավարձն արդյունաբերական-արտադրական անձնակազմի տարիֆային աշխատավարձում ավելի ցածր տեսակարար կշիռ ունի, քան ստացած պարգևը։ Այսպես, ծխախոտի կոմբինատում 1968 թ. ԻՏԱ-ի աշխատավարձը կազմում էր տարիֆային աշխատավարձի 10,6, ձեթ-օճառի կոմբինատում՝ 21,9, գարեջրի գործարանում՝ 19,1 տոկոս, սակայն նրանք ստացել են պարգևի համապատասխանաբար 34, 31,2 և 27 տոկոսը։ Նույնը կարելի է ասել նաև ծառայողների մասին։ Բանվորների տարիֆային աշխատավարձը ծխախոտի փորձարարական կոմբինատում կազմում է ձեռնարկության տարիֆային աշխատավարձի 84, ձեթ-օճառ կոմբինատում՝ 71, գարեջրի գործարանում՝ 70,6 տոկոսը, սակայն նրանք ստացել են ընթացիկ պարգևի 48,8, 59 և 58,7 տոկոսը, իսկ հացի գործարանում ԻՏԱ-ի աշխատավարձը կազմում է ձեռնարկության տարիֆային աշխատավարձի 10,9, բանվորներինը՝ 82,1 տոկոսը։ Սակայն նրանք ստացել են պարգևի 8,7 և 85,9 տոկոսը։

Այս ակնառու տատանումների պատճառն այն է, որ ռեֆորմի պայմաններում նյութական խրախուսման ֆոնդի բաշխման և օգտագործման բնագավառում ձեռնարկություններն ստանալով որոշակի իրավունքներ, առանձին դեպքերում այդ ֆոնդը ճիշտ չեն բաշխում տարբեր կատեգորիաների աշխատողների միջև. մի դեպքում այն օգտագործվում է բանվորների պարգևի (հացի գործարան), մյուս դեպքում՝ ԻՏԱ-ի և ծառայողների պարգևի ավելացման համար (ծխախոտի փորձարարական կոմբինատ)։

Սակայն այդ ֆոնդը ճիշտ օգտագործելիս խրախուսման սիստեմը կդառնա ավելի ճկուն, գործնական և հուսալի, որը հնարավորություն կընձեռի հավասարապես խրախուսել բոլոր կատեգորիաների աշխատողներին։ Վերը նըշվածից հետևում է, որ խրախուսման հետ կապված շատ հարցեր բոլոր դեպքերում չէ, որ ձեռնարկությունները կարող են ճիշտ լուծել։ Ուստի, այն պետք է կարգավորվի կենտրոնացված ձևով, մինիստրության կողմից, որպեսզի խրախուսման ֆոնդը բաշխվի այնպես, որ չխախտվի վարձատրության ճիշտ հարաբերակցությունն աշխատողների տարբեր կատեգորիաների միջև։

Նյութական խրախուսման սիստեմի ուսումնասիրությունը և վերլուծությունը ցույց է տալիս, որ բացի ամենամսյա պարգևից, ձեռնարկությունների աշխատողները պարգևատրվում են նաև կարևոր հանձնարարությունների կատարման, ձեռնարկության տարեկան աշխատանքի արդյունքների, սոցմրցությունում հաղթելու, նոր տեխնիկայի ներդրման, էլեկտրաէներգիայի խնայողության և գյուտարարության համար։

Պարգևի վերոհիշյալ տեսակներն ավելի շատ կապված են ինժեներատեխնիկական անձնակազմի աշխատանքի անմիջական արդյունքների հետ. ուստի, այս նպատակով կատարվող պարգևատրման մեծ մասը տրվում է ինժեներատեխնիկական աշխատողներին։ Իսկ տարեկան աշխատանքի արդյունքների համար տրվող պարգևի տեսակարար կշռում ինժեներատեխնիկական աշխատողների բաժինը նորից ավելի է, քանի որ նրանք տվյալ ձեռնարկությունում համեմատաբար երկար աշխատանքային ստաժ ունեն, քան բանվորները։

Աշխատանքի նոր պայմաններում պարգևի սահմանման գործում կարևորը նյութական խրախուսման ֆոնդի ճիշտ օգտագործումն է, այսինքն՝ այնպիսի բաշխումը, որ աշխատավարձի ֆոնդից վճարվող պարգևի հետ միասին ապահովվի ինժեներատեխնիկական աշխատողների, ծառայողների հաս-



տիքային և բանվորների տարիֆային աշխատավարձի նկատմամբ հավասար հարաբերակցություն։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1965 թ. հոկտեմբերի 4-ի որոշման մեջ նշվում է. այն ձեռնարկությունները, որոնք կատարում են արտադրական առաջադրանքները և սահմանված չափով ստեղծվում է նյութական խրախուսման ֆոնդ, ապա դրանից պետք է բանվորներին ընթացիկ պարգև վճարվի։ Մեր նշած խրախուսման ֆոնդից պարգևատրվել են հացի գործարանի և ձեթ-օճառ կոմբինատի բանվորները. իսկ ծխախոտի կոմբինատում և գարեջրի գործարանում այդ ֆոնդից բանվորներին չի վճարվել, այն դեպքում, երբ հացի գործարանում և ձեթ-օճառ կոմբինատում աշխատավարձի ֆոնդից բանվորների ստացած պարգևի չափը բարձր է միջին ճյուղային մակարդակից, իսկ ծխախոտի կոմբինատում և գարեջրի գործարանում անհամեմատ ցածր է։ Այսպիսի մոտեցումը առանձին ձեռնարկություններում և, հատկապես, ծխախոտի փորձարարական կոմբինատում, մեծացնում է ճեղքվածքը տարբեր կատեգորիաների աշխատողների ստացած պարգևի միջև, որի պատճառով խախտվում է աշխատավարձի սահմանման քաղաքականությունը։

Անհրաժեշտ է ճիշտ օգտագործել նոր սիստեմի առավելությունները, այսինքն՝ խրախուսման ֆոնդի բաշխումն ու օգտագործումը կատարել այնպես, որ ուղղակի կապ լինի յուրաքանչյուր աշխատողի աշխատանքային ավանդի և այդ ֆոնդից նրանց հատկացվող պարգևի միջև։ Այստեղից էլ յուրաքանչյուրը գիտակցում է, որ ամբողջ կոլեկտիվի աշխատանքը, խրախուսման ֆոնդը և դրանից հատկացվող իր բաժինն անմիջականորեն կապված է անձնական աշխատանքից, պատասխանատվությունից և աշխատանքի նկատմամբ իր վերաբերմունքից։ Ուրեմն, մեր երկրում որքան արդյունավետ աշխատի մարդը, այնքան ավելի բարձր կվարձատրվի։

Քանի որ նյութական խրախուսման ֆոնդի օգտագործումն ըստ առանձին մասերի կատարում են ձեռնարկությունները, ապա այնտեղ նույն նպատակի համար տարբեր չափեր են հատկացվում։ Այսպես, ԻՏԱ-ի և ծառայողների ընթացիկ պարգևատրման նպատակով 1968 թ. ծխախոտի փորձարարական կոմբինատում ծախսվել է խրախուսման ֆոնդի 43,2, ձեթ-օճառ կոմբինատում՝ 50,9, հացի գործարանում՝ 34, գարեջրի գործարանում՝ 51, մինիստրության նոր սիստեմով աշխատող ձեռնարկություններում՝ 39,1 տոկոսը։

Բանվորների ընթացիկ պարգևատրման նպատակով խրախուսման ֆոնդից օգտագործվել է ձեթ-օճառ կոմբինատում՝ 9,4, հացի գործարանում՝ 23, մինիստրության նոր սիստեմով աշխատող ձեռնարկություններում՝ 11 տոկոսը, իսկ մյուս ձեռնարկություններում այդ նպատակով բանվորները չեն պարգևատրվել։

Նյութական խրախուսման ֆոնդի օգտագործումը (ըստ առանձին նպատակների) կատարվում է այնպես, որ զգալի տատանումներ են առաջանում տարբեր ձեռնարկությունների միջև։ Պատճառն այն է, որ դրանք ինքնուրույն են բաշխում և օգտագործում խրախուսման ֆոնդը. այստեղից էլ մի ձեռնարկությունն ավելի մեծ բաժին է հատկացնում ընթացիկ պարգևատրմանը, մյուսը՝ տարեկան աշխատանքի արդյունքների համար և այլն։

Որոշ ձեռնարկություններ դեռ լրիվ չեն պատկերացնում պարգևատրման այս կամ այն տեսակի նշանակությունը և շատ դեպքերում հարցին մոտենում են մեխանիկորեն։ Նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների աշխատանքի փորձի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ խրախուսման հետ կապված շատ հարցեր ձեռնարկությունները չեն կարող լուծել ինքնուրույն և միասնական մոտեցում է պահանջվում տվյալ ճյուղի համար։

Մեր կարծիքով, նյութական խրախուսման ֆոնդի օգտագործման համար մինիստրությունը պետք է կայուն նորմատիվներ սահմանի, որից գործը կշահի։ Անհրաժեշտ է ծխախոտի կոմբինատում և գարեջի գործարանում նյութական խրախուսման ֆոնդից որոշակի միջոցներ հատկացնել բանվորներին ընթացիկ պարգևատրման համար, իսկ ձեթ-օճառ կոմբինատում՝ ավելացնել նրանց հատկացվող բաժինը, որոնք հնարավորություն կընձեռեն զգալի չափով

# Գիտությունը և կյանքը

# ՍՊԻՏԱԿՈՒՑԻ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

## ՍՊԻՏԱԿՈՒՑՆԵՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՐԴՈՒ ԿՅԱՆՔՈՒՄ

Մարդու և կենդանիների աճի ու նրանց օրգանիզմի նորմալ կենսագործունեության համար անհրաժեշտ սննդանյութերի մեջ սպիտակուցների նշանակությունը առանձնահատուկ է, քանի որ մյուս սննդանյութերը (ածխաջրատները, ճարպերը, անազոտի էքստրակտային նյութերը և այլն) ազոտ չպարունակելու պատճառով չեն կարող դրանց փոխարինել: Բացառիկ մեծ է սպիտակուցների կենսաբանական դերը: Դրանք կենդանի նյութի մշտական և առավել կարևոր բաղադրիչ մասերն են, նրա կառուցվածքի և ֆունկցիայի հիմքը: Գտնվելով կենդանի օրգանիզմի նյութափոխանակության կենտրոնում ու ենթարկվելով զանազան քիմիական վերափոխությունների, սպիտակուցները փոխանակության շրջապտույտի մեջ են ներգրավում նաև մյուս օրգանական և անօրգանական նյութերը:

Սպիտակուցների բացառիկ նշանակությունը կենսապրոցեսներում կապված է այն հիմնական առանձնահատկությունների հետ, որոնք բնորոշ են միայն այդ նյութին: Պրոտոպլազմայի և բջջակորիզի՝ ակտիվ գործող բոլոր ստրուկտուրաները, ողջ կենդանի նյութը իրենց հիմքում սպիտակուցային են:

Սպիտակուցների կառուցվածքն այնպիսին է, որ հնարավոր է դրանց անհամար տարբերակների գոյությունը, որոնք ընդունակ են հակազդելու և ամենաբազմազան նյութերի հետ կազմելու զանազան բարդ միացություններ, կոմպլեքսներ: Սպիտակուցներն աչքի են ընկնում բացառիկ պլաստիկությամբ, ցայտուն արտահայտված սպեցիֆիկ առանձնահատկություններով, որոնցից կարևորագույնը խիստ ընտրողական ռեակցիաներ և սպեցիֆիկ կատալիտիկ ֆունկցիաներ իրականացնելու ունակությունն է: Այդպիսի ֆունկցիաներով օժտված սպիտակուցները՝ սպիտակուց-ֆերմենտները, որոշում են կենդանի նյութի քիմիական փոփոխությունների ողջ ընթացքը և փաստորեն իրականացնում են նյութափոխանակությունը՝ օրգանիզմի ողջ կենսագործունեության հիմքը:

Սպիտակուցների դերը կենսական երևույթներում առաջին անգամ սպառիչ պարզությամբ բնորոշել է Ֆ. Էնգելսը. «Կյանքը,— գրել է նա,— սպիտակուցային մարմինների գոյաձևն է և գոյության այդ ձևը, իր էությամբ, կայանում է այդ մարմինների քիմիական բաղկացուցիչ մասերի մշտական ինքնանորոգման մեջ... Ամենուրեք, որտեղ մենք հանդիպում ենք կյանքի, գտնում ենք, որ նա կապված է որևէ սպիտակուցային մարմնի հետ, և ամենուրեք, որտեղ հանդիպում ենք որևէ սպիտակուցային մարմնի, որը չի գտնվում քայքայման պրոցեսում, առանց բացառության հանդիպում ենք և կյանքի երևույթների» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1950, էջ 77, ռուս. հրատ):



## ՍՊԻՏԱԿՈՒՑՆԵՐԸ ՈՐՊԵՍ ԱՆՓՈԽԱՐԻՆԵԼԻ ՍՆՆԴԱՆՅՈՒԹԵՐ

Առանց սպիտակուցների անհրաժեշտ քանակի օրգանիզմի ոչ միայն կենսագործունեությունն է անհնար, այլև գոյությունը: Այստեղից բխում է այն մեծ ուշադրությունը, որ հատկացվում է բնակչությանն այդ սննդանյութով ապահովելուն: Չնայած այս ուղղությամբ ձեռք բերված անվիճելի նվաճումներին, սպիտակուցի պրոբլեմը դեռ չի լուծված և մընում է մարդկության ամենահրատապ խնդիրներից մեկը:

Եթե առանձին բացառություններ նկատի չունենանք, սպիտակուցային սննդի պակաս են զգում աշխարհի գրեթե բոլոր երկրները: Միջին հաշվով այդ անփոխարինելի սննդանյութի պակասը կազմում է 30—35 տոկոս, շատ դեպքերում հասնելով 50-ի և անցնելով դրանից: Առանձնապես զգալի է կենդանական սպիտակուցների պակասը, որոնք աչքի են ընկնում բարձր կենսաբանական լիարժեքությամբ և առավել անհրաժեշտ են օրգանիզմի նորմալ զարգացման ու կենսագործունեության համար:

Մի շարք հետազոտությունների հիման վրա սահմանված են սպիտակուցի պահանջի նորմաները մարդու օնտոգենետիկ զարգացման տարբեր շրջաններում: Այսպես՝ կրծքի երեխային՝ մեկ կիլոգրամ քաշին օրական անհրաժեշտ է 5 գ սպիտակուց, **1—3 տարեկաններին**՝ 3,8—4, **4—8 տարեկաններին**՝ 3—3,5, **դպրոցականներին**՝ 2—3, **հասուն մարդուն**՝ 1,5 գ կամ օրական 100—150 գ: Մեզ մոտ մեկ հասուն մարդուն օրական ընկնում է միջին հաշվով մոտ 55—60 գ սպիտակուց:

Մարդու սննդի համար անհրաժեշտ կենդանական սպիտակուցների պահանջը բավարարվում է գյուղատնտեսական կենդանիների միջոցով, որոնք բուսական և այլ կերերի մեջ եղած հում պրոտեինները բարդ վերափոխությունների ճանապարհով վեր են ածում բարձր մոլեկուլային, լիարժեք սպիտակուցների: Չնայած բուսական ու կենդանական օրգանիզմները կազմված են քիմիական նույն տարրերից ($C_1O_1H_1N$ և մի շարք հանքային նյութերից), բայց սննդանյութերի պարունակությամբ դրանք խիստ տարբերվում են միմյանցից: Օրինակ, եթե բուսական օրգանիզմում ածխաջրատները կազմում են չոր նյութի մոտ 80 տոկոսը, ապա կենդանական օրգանիզմում դրանց պարունակությունն ընդամենը մոտ 2 տոկոս է, իսկ սպիտակուցներինը՝ կենդանական օրգանիզմում 5—6 անգամ ավելի է, քան բուսական օրգանիզմում:

Կենդանական սպիտակուցների նկատմամբ բնակչության պահանջը բավարարելու համար անհրաժեշտ է անասնաբուծությունն ապահովել պահանջվող քանակությամբ սպիտակուցային կերով: Որոշ երկրների այդ հաջողվել է (ԱՄՆ, Սկանդինավյան երկրներ, Հոլանդիա) սպիտակուցներով հարուստ կերային կուլտուրաների (սոյա, ոլոռն, թիթեռնածաղկավոր խոտաբույսեր և այլն) ցանքատարածությունների ընդարձակման և դրանց բերքատվության բարձրացման շնորհիվ: Դրա հետ մեկտեղ այդ երկրներում ծավալվել է սպիտակուցա-վիտամինային կերերի, ամինաթթուների, անտիբիոտիկների և այլ խթանիչների արդյունաբերական արտադրությունը:

ՍՍՀՄ-ում ցանքատարածությունների ստրուկտուրան և բնակլիմայական պայմանները հնարավորություն չեն ընձեռում մեծ տարածություններ հատկացնելու կերային հատիկաընդեղեն կուլտուրաներին, մասնավորապես՝ սոյային: Բացի դրանից, դեռ ցածր է այդ կուլտուրաների բերքատվությունը (ԱՄՆ-ի համեմատությամբ՝ մոտ երկու անգամ): Այս ամենի հետևանքով ՍՍՀՄ-ում անասնաբուծությունն սպիտակուցային և վիտամինային կերերի խիստ պակաս է զգում, հատկապես՝ բարձր սպիտակուցային կերերի:

ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության տվյալներով վերջին տարիները մեկ կերամիավորի մեջ մարսելի սպիտակուցի քանակը փաստորեն կազմել է 60—65, ամենաշատը 70 գրամ, պահանջվող 90—110 գրամի փոխարեն: Կերային սպիտակուցի պակասը երկրում կազմում է տարեկան 5—6 միլիոն տոննա:

Մոտակա տարիներին գյուղատնտեսական կենդանիների և թռչունների գլխաքանակի ավելացմանը և մթերատվության բարձրացմանը զուգընթաց, անընդհատ կավելանա հատկապես սպիտակուցային կերի պահանջը: 1970 թվականին սպիտակուցի դեֆիցիտը կկազմի մոտավորապես 6,8 միլիոն տոննա: Սպիտակուցի այդպիսի նկատելի պակասը կենդանիների կերաբաժնում խիստ իջեցնում է նրանց մթերատվությունը, բարձրացնում է կերերի ծախսը և մթերքների ինքնարժեքը:

Այս ամենի հետևանքով լիովին չի բավարարվում բնակչության պահանջմունքը անասնապահական այնպիսի մթերքների նկատմամբ, ինչպիսիք են՝ միսը և ձուն: 1966 թ. ՍՍՀՄ-ում բնակչության մեկ շնչին ընկել է տարեկան 43 կգ միս, 1970 թ. նախատեսվում է 49, գիտականորեն հիմնավորված նորմաներով սահմանված 80—100 կգ փոխարեն: ԱՄՆ-ում համապատասխան թվերը կազմել են 107 և 112 կգ: 1968 թ. ՍՍՀՄ-ում մեկ շնչին հասել է 153 ձու, որը զգալիորեն պակաս է գիտականորեն հիմնավորված նորմաներից:

Մեզ հաջողվեց վերջին տարիներին նկատելիորեն ավելացնել կաթի և կարագ-յուղի ար-

| | |
|---|---|
| | 1980 թ. |
| Ամինաթթուներ ընդամենը | 90—100 |
| այդ թվում՝ | |
| լիզին | 25— 30 |
| գլուտամինյան թթու | 50— 60 |
| տրիպտոֆան | 5— 6 |
| մետիոնին և այլ ամինաթթուներ | 4— 10 |

### *ՎԻՏԱՄԻՆՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՍՍՀՄ-ՈՒՄ*

Սպիտակուցների և ամինաթթուների հետ միասին կերի կարևորագույն բաղադրիչ մասերն են վիտամինները:

Մեր երկրում անասնաբուծության մեջ սինթետիկ վիտամինները օգտագործվում են դեռ շատ սահմանափակ քանակով և գլխավորապես՝ թռչնաբուծական փաբրիկաներում: Այդ բացատրվում է նրանով, որ մեզ մոտ դեռևս կազմակերպված չէ այդ կարևորագույն խթանիչների մասսայական արդյունաբերական արտադրությունը: Նախատեսվում է միկրոբիոլոգիական արդյունաբերական ձեռնարկություններում կազմակերպել ռիբաֆլավին ($B_2$), ցիանկոբալամին ($B_{12}$), A պրովիտամին (բետա-կարոտին) և կալցիֆերոլ (ռակտտախիտային վիտամին $D_2$) վիտամինների արտադրությունը: Նախատեսվում է 1970—1974 թթ. երկրում կառուցել վիտամինների և անտիբիոտիկների խոշոր կոմբինատ, տարեկան մոտ 600 տոննա արտադրողականությամբ, որից՝ $B_2$ վիտամին՝ 100 տոննա (1966 թ. արտադրած 12 տոննայի դիմաց) A պրովիտամին (բետա-կարոտին) 100, կորմոգրիզին՝ 200, կորմարին՝ 50, վիտամիցին՝ 50 տոննա:

ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունը նախատեսում է 1970 թ. նիկոտինային թթվի (վիտամին PP) արտադրությունը հասցնել 740 տոննայի (անասնաբուծության պահանջն այդ վիտամինի նկատմամբ կազմում է 310 տոննա): Ծրագրվում է կազմակերպել նաև E վիտամինի և խոլինքլորիդի արտադրությունը (անասնաբուծության պահանջը E վիտամինի նկատմամբ կազմում է 36 տոննա):

Կենսախթանիչ այս արժեքավոր նյութերի մասսայական արտադրությունը հնարավորություն է ընձեռում սպիտակուցի պրոբլեմը կոմպլեքսային եղանակով լուծելու, ամենուրեք ավելացնելու սպիտակուցների, անփոխարինելի ամինաթթուների, վիտամինների, անտիբիոտիկների և միկրոէլեմենտների արտադրությունը, նկատելիորեն բարձրացնելու սպիտակուցային նյութափոխանակության գործակիցը, առավել արդյունավետ օգտագործելու գյուղատնտեսական կենդանիների ու թռչունների կենսաբանական առանձնահատկությունները:

Բազմաթիվ հետազոտություններով պարզված է, որ սպիտակուցների նյութափոխանակությունը և դրանց մարսելիության գործակիցն զգալիորեն բարձրանում է, երբ կերաբաժինն ապահովված է առավել կարևոր անփոխարինելի ամինաթթուներով (լիզին, մետիոնին, գլուտամինյան թթու, տրիպտոֆան, արգինին), վիտամիններով և անտիբիոտիկներով: Այսպես, օրինակ, երբ բտվող խոճկորների հիմնական կերաբաժնին (որն ապահովված է պահանջվող քանակի սպիտակուցով) ավելացնում են չնչին քանակությամբ ամինաթթուներ, վիտամիններ և անտիբիոտիկներ, 1 կգ քաշաճի վրա ծախսվող կերը կրճատվում է 31 տոկոսով կամ մոտ մեկ երրորդով: Այստեղ ցայտուն դրսևորվում է նշված կենսաբանական ակտիվ նյութերի դերը սպիտակուցային նյութափոխանակության գործակցի բարձրացման մեջ: Գյուղատնտեսական կենդանիների և թռչունների կենսաբանական արժեքավոր առանձնահատկությունների ճիշտ օգտագործման օրինակ կարող է ծառայել հետևյալ համեմատությունը. 1 կգ մսի (կենդանի քաշով) արտադրության վրա խոշոր և մանր եղջերավոր կենդանիները ծախսում են 7—8 և ավելի կերամիավոր, խոզերը, որոնք համարվում են առավել վաղահաս և կերը բարձր հատուցող մսատու կենդանիներ, 1 կգ քաշաճի վրա ծախսում են 5—5,5, իսկ գյուղատնտեսական թռչունները՝ ընդամենը 2,5—3 կերամիավոր, այսինքն՝ մոտ երեք անգամ քիչ, քան խոշոր ու մանր եղջերավոր կենդանիները և երկու անգամ քիչ, քան խոզերը:

Երբ մսատու ճտերի (բրոյլերների) հիմնական կերաբաժնին ավելացնում են կենսախթանիչներ՝ ամինաթթուներ, վիտամիններ և անտիբիոտիկներ, 1 կգ քաշաճի վրա ծախսվող կերի քանակը կրճատվում է 60 տոկոսով, 5,56 կիլոգրամից իջնելով 2,2-ի: Հիշենք, որ բտվող խոճկորների կերաբաժնում նույն կենսախթանիչները ավելացնելու դեպքում կերի ծախսը 1 կգ քաշաճի վրա պակասում է 31 տոկոսով: Բերված փաստերը ցույց են տալիս, որ քաշաճի բարձր տեմպի տեսակետից թռչունները, հատկապես նրանց մատղաշը, ունեն մեծ առավելություն գյուղատնտեսական մյուս կենդանիների նկատմամբ: Այստեղ ցայտուն դրսևորվում է թռչունների կենսաբանական արժեքավոր առանձնահատկությունը, որը և պետք է հմտորեն օգտագործել:



Վերը մենք նշեցինք, որ մսացու ճտերի կերաբաժնին 1 տոննա կերային շաքարասնկեր ավելացնելիս լրացուցիչ ստացվում է 2,2—2,9 տոննա թռչունի միս, իսկ խոճկորների կերաբաժնին նույնքան շաքարասնկեր ավելացնելիս՝ 700—800 կգ միս կամ 3—4 անգամ պակաս: Այս փաստը նույնպես հաստատում է թռչունների՝ կերի բարձր հատուցման կենսաբանական առանձնահատկությունը: Այսպիսով, եթե թվարկված գործոնները օգտագործվեն համատեղ՝ կոմպլեքսային եղանակով, ապա հնարավորություն կընձեռվի սպիտակուցի պաշարները օգտագործել առավել բարձր արդյունավետությամբ և արագացնել այդ սուր պրոբլեմի լուծումը:

### *ԿԵՐԱՅԻՆ ՍՊԻՏԱԿՈՒՑԻ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՄԱՆ ՄՈՏԱԿԱ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ*

Սպիտակուցի պակասը գյուղատնտեսական կենդանիների կերաբաժնում ավելի սուր է զգացվում մեր հանրապետությունում: Դա բացատրվում է, մի կողմից՝ ցայտուն արտահայտված հողասակավությամբ, կերային կուլտուրաների ցանքատարածությունների սահմանափակվածությամբ, մյուս կողմից՝ բնական արոտների գերծանրաբեռնվածությամբ, որի հետևանքով ցածր է դրանց մթերատվությունը: Կերաբույսերի բերքահավաքի կանոնների խախտման հետևանքով կերի մեջ ցածր է սպիտակուցի ու վիտամինների պարունակությունը, որի պատճառով կերի մեծ գերածախսով են արտադրվում մեկ միավոր անասնաբուծական մթերքները: Հանրապետությունում զգալի աշխատանք է տարվում ջրովի հողատարածությունները ավելացնելու, բնական խոտհարքները ջրարբի, Արարատյան դաշտավայրի աղակալած հողերը բերրի դարձնելու և գյուղատնտեսական շրջանառության մեջ մտցնելու, ցանովի խոտերի և սիլոսային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ: Այս միջոցառումները, անշուշտ, նկատելիորեն կավելացնեն կոշտ, հյութալի և, մասամբ, խտացրած կերերի պաշարները, որոշ չափով կնվազի կերային սպիտակուցի պակասը, սակայն պետք է ասել, որ այն վերացնել միայն գյուղատնտեսական արտադրության հաշվին, մասնավորապես մեր հանրապետության պայմաններում, հնարավոր չէ, մանավանդ, եթե նկատի ունենանք, որ տարեցտարի ավելանում է գյուղատնտեսական կենդանիների ու թռչունների գլխաքանակը, որոշ չափով բարձրանում նաև մթերատվությունը, որի հետևանքով անընդհատ ավելանում է կերային սպիտակուցի և վիտամինների պահանջը: Ուրեմն ո՞րն է ելքը: **Սպիտակուցի և վիտամինների պրոբլեմը կարելի է լուծել միայն այդ սննդանյութերի արդյունաբերական արտադրության ճանապարհով՝ ոչ սննդային հումքից, որի պաշարները, ինչպես նշեցինք, պրակտիկորեն անսահմանափակ են:** Խոսքը վերաբերում է կերային շաքարասնկերի և վիտամինների գործարանային արտադրությանը, որոնց քիմիական բաղադրության, սննդարարության և կերային արժեքի մասին մանրամասն տվյալներ են բերված հոդվածի սկզբում:

Հայաստանում այդպիսի արտադրություն կազմակերպելու նպատակահարմարությունը և խիստ անհրաժեշտությունը հիմնավորվել է դեռ երկու տասնամյակ առաջ, սակայն դրա իրականացմանը խոչընդոտել են ինչպես որոշ սուբյեկտիվ մոմենտներ, այնպես էլ լավորակ հումքի պակասը տեղում: Վերջին տարիներս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կառավարությունը և պետպլանը ձեռք առան բոլոր միջոցները՝ մեզ մոտ առաջիկա երկու—երեք տարիներում նախագծելու և կառուցելու կերային շաքարասնկերի, ավելի ճիշտ՝ սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատի խոշոր գործարան: Միութենական վերադաս օրգանները համաձայնություն են տվել այդպիսի գործարանի կառուցմանը Հայաստանում և միութենական նախագծող ինստիտուտի Օդեսայի մասնաճյուղն արդեն կազմում է գործարանի նախագծային առաջադրանքը: Այդ կլինի մեր հանրապետության ամենախոշոր արտադրական ձեռնարկություններից մեկը: Դրա կառուցման վրա կծախսվի 36 միլիոն ռուբլի, տարեկան կարտադրվի 70 հազար տոննա սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատ, որը լիովին կբավարարի անասնաբուծության և թռչնաբուծության ո՛չ միայն այսօրվա, վաղվա, այլև առաջիկա տասնամյակների պահանջը: Այդ բացառիկ արժեքավոր կերանյութի արտադրության համար որպես հիմնական հումք օգտագործվելու են նավթարդյունաբերության մնացուկները— հեղուկ պարաֆինը, որը կներմուծվի Գրոզնից, իսկ հանքային ազոտի հումքը և պահանջվող մյուս բաղադրիչները արտադրվում են մեզ մոտ: Շատ բարձր է այդ տիպի գործարանների շահութաբերությունը: Մասնագետների հաշվարկումներով դրանց կառուցման վրա ծախսված կապիտալ ներդրումները կփոխհատուցվեն 1,5—2 տարում: Որպեսզի ավելի պարզ պատկերացնենք Հայաստանի համար այդ նոր արտադրության նշանակությունը, բերենք հետևյալ համեմատական տվյալները. գիտական և արտադրական փորձերով հաստատված է, որ կենդանիների ու թռչունների կերաբաժնում 70 հազար տոննա սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատի օգտագործումը հնարավորություն

կտա լրացուցիչ ստանալու խոզի միս՝ 54.500, իսկ թռչունի միս՝ (բրոյլերներ աճեցնելու դեպքում) 175 հազար տոննա: Ածան հավերի կերաբաժնում նույն քանակի կոնցենտրատ ավելացնելու դեպքում լրացուցիչ կստացվի 2,275 միլիոն ձու: Կթվող կովերից՝ լրացուցիչ կըստացվի 315 հազար տոննա կաթ: Տնտեսագետների, կենսաբանների և անասնաբույծների հաշվարկումներով 70 հազար տոննա սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատն իր սննդային համարժեքով (անասնաբուծական մթերքների արտադրության համար) համասար է 637 հազար տոննա հացահատիկի (չմոռանանք, որ մեր հանրապետությունում տարեկան արտադրվում է միջին հաշվով ընդամենը 270—290 հազար տոննա հացահատիկ): Անհրաժեշտ է նշել, որ վերջին տարիներս Հայաստանում լայն թափ են ստացել միկրոբիոլոգիական սինթեզի ճանապարհով ստացվող նաև այլ կենսախթանիչների՝ ամինաթթուների և վիտամինների արտադրություն ստեղծելու նպատակով տարվող աշխատանքները: Չարենցավանում արդեն կառուցվում է և առաջիկա մեկ—երկու տարում շահագործման կհանձնըվի լիզինի (կարևորագույն անփոխարինելի ամինաթթուներից մեկի) գործարանը՝ տարեկան 1000 տոննա արտադրողականությամբ: Գործարանի կառուցման վրա ծախսվելու է 17 մլն ռուբլի: Այդ գործարանում, որպես արտադրության մնացորդ, կստացվի նաև մոտ 1000 տոննա բիոմասսա, որը բարձրարժեք սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատ է թռչունների և խոզերի համար: Նույն գործարանի տերիտորիայում կազմակերպվում է մի այլ անփոխարինելի, շատ արժեքավոր ամինաթթվի՝ գլուտամինյան թթվի արտադրությունը: Ձեռնարկված է նաև մի քանի կարևոր վիտամինների արդյունաբերական արտադրությունը:

Այսպիսով, Հայաստանում հետևողականորեն իրականացվում է արդյունաբերական եղանակով սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատի և այլ կարևորագույն կենսախթանիչների կոմպլեքսային արտադրությունը, որը մեծ չափով կօգնի՝ մոտ ապագայում լուծելու կերային սպիտակուցի, դրա շնորհիվ և՝ սննդային սպիտակուցի պրոբլեմը:

Կարևոր նշանակություն ունեցող այս խընդիրների առաջքաշման, դրանց լուծման ուղիների գիտատնտեսական հիմնավորման ուղղությամբ մեծ աշխատանք են կատարել Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան և նրա համապատասխան ինստիտուտները: Գիտության և արտադրության սերտ համագործակցությունն այս հարցում դրսևորվեց ամբողջ ուժով:



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՆ ՈՒ ՎԱՂԸ

Ե. Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

*Ռադիոն ու հեռուստատեսությունը դարձել են մեր ամենօրյա ուղեկիցը՝ քաղաքական կյանքի ոլորտը ներգրավել միլիոնավոր մարդկանց: Նկատի ունենալով ռադիոյի և հեռուստատեսության կարևորագույն դերը հասարակության հոգևոր կյանքում, ՍՄԿԿ XXIII համագումարն իր բանաձևում նշեց, որ մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, սովետական մարդկանց քաղաքական ու կուլտուրական զարգացման համար անհրաժեշտ է լայնորեն օգտագործել մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը և կինոն:*

*Սովետական ռադիոհաղորդումների ու հեռուստատեսության նյութատեխնիկական բազայի զարգացման ու կատարելագործման համար կուսակցությունը գործադրում է բոլոր միջոցները: 1966—1970 թթ. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում կարդում ենք. համակողմանի զարգացնել ռադիոընդունիչների, հեռուստացույցների, ռադիոլաների արտադրությունը, օգտագործելով կիսահաղորդիչ սարքերը՝ յուրացնել գունավոր հեռուստացույցների մասսայական արտադրությունը, ընդարձակել ռադիո և հեռուստակայանների ցանցը, օգտագործել երկրի արհեստական արբանյակները հեռուստահաղորդումների և մեծ հեռավորություններում կապի կազմակերպման համար. առավել չափով զարգացնել հեռուստատեսությունը (նաև գունավոր), որը կոչված է կարևոր դեր խաղալու քաղաքի և գյուղի, ինչպես նաև երկրի տարբեր շրջանների բնակչության մերձեցման գործում. բարելավել ռադիոյի և հեռուստատեսության ծրագրերը:*

*Կուսակցության համագումարի այս դիրեկտիվներն այժմ հաջողությամբ են կենսագործվում: Հատկապես բուռն թափով է զարգանում հեռուստատեսությունը. այն դառնում է ո՛չ միայն պրոպագանդայի առավել արդյունավետ ու հեռանկարային միջոց, կուլտուրայի ուղեկից, արվեստի բոլոր ձևերի հաղորդիչ, այլև ձևավորվում է որպես արվեստի մի նոր, ինքնուրույն բնագավառ: Այժմ մեր հայրենիքի մայրաքաղաքից կոաքսիալ կաբելի և լայնագիծ ռադիոռելեային ցանցի միջոցով կենտրոնական ծրագիրը հաղորդվում է ՍՍՀՄ 209 քաղաքներին և հեռուստակայանների օգնությամբ տրանսլացվում է եթեր: Հե-*

ռուստակայանների կայուն ընդունման գոտում այժմ ապրում են ավելի քան 140 միլիոն մարդ— երկրի բնակչության մոտ 60 տոկոսը: Սովետական Միության հեռուստահաղորդման ցանցում ընդգրկված են ավելի քան 1000 հեռուստակայան (243 հզոր հեռուստակայան և 770 փոքր կարողությամբ ռետրանսլյատոր)— ամենախոշոր, ամենաճյուղավորված, տեխնիկապես լավ հագեցած ցանցերից մեկն աշխարհում, որն օգտագործում է կապի ո՛չ միայն վերերկրյա, այլև կոսմիկական միջոցները:

1965 թ. ապրիլի 23-ին ՍՍՀՄ-ում երկրի ուղեծիր դուրս բերվեց «Մոլնիա—1» կապի արբանյակը, որը նախատեսված է բազմականալ հեռագրահեռախոսային կապի և հեռուստատեսային ծրագրերի հաղորդման համար: Արբանյակի շրջապտույտը տևում է 12 ժամ— օրական երկու պտույտ երկրի շուրջը— և կարողանում է ապահովել կապը մեր երկրի ցանկացած վայրի, ինչպես և Եվրոպայի ու Ասիայի շատ երկրների միջև: «Օրբիտա» հեռուստատեսային կապի կոսմիկական սիստեմում տարեցտարի ավելանում է վերերկրյա ընդունիչ հեռուստակայանների թիվը, որը հնարավորություն է ընձեռում «Մոլնիա—1» սերիայի հայրենական արհեստական արբանյակի միջոցով հեռուստատեսային ծրագրեր ընդունելու ամենահեռավոր շրջաններում— Խաղաղ օվկիանոսի ափերին, Սիբիրում, Անդրբևեռում: «Օրբիտա»-ի հեռուստադիտողների համար օրական 8—10 ժամ հաղորդվում է կենտրոնական հեռուստատեսային ծրագիրը:

1970 թ. վերջերին կենտրոնական հեռուստատեսային ծրագիրը «Օրբիտա» կոսմիկական հեռուստատեսային կայանի սիստեմի միջոցով կարող են ընդունել հեռուստատեսային բոլոր կայանները: Քանի որ մոտակա տարիներս անհրաժեշտ է հեռուստատեսությամբ ապահովել երկրի բոլոր շրջանները, ապա տնտեսապես առավել նպատակահարմար է այս խնդիրը լուծել հեռուստատեսային կապի կոսմիկական գծերի կառուցմամբ, իսկ հետագայում կազմակերպել հեռուստահաղորդումների ընդունումն անմիջապես հեռուստացույցների վրա՝ կոսմիկական ռետրանսլյատորների միջոցով: Հեռուստատեսային ժամանակակից տեխնիկան ընդհուպ մոտեցել է այդ խնդրի լուծմանը: Այն հնարավորություն կընձեռի մոտ ապագայում աշխարհի բոլոր վայրերից ընդունելու հեռուստահաղորդումներ: 1970 թ. վերջում հեռուստատեսային ցանցը կընդգրկի ավելի քան 150 միլիոն բնակչություն ունեցող տարածություն: Այդ ժամանակահատվածում կկառուցվեն 1200 կայան: Այժմ հեռուստացույց ունեն ավելի քան 28 միլիոն, իսկ 1970 թ. վերջերին կունենան 45—48 միլիոն մարդ:

Այժմ, փաստորեն, ստեղծվում են համամիութենական հեռուստատեսային միասնական սխեմայի նախագծերը: Այդ սխեմայի հիմքն է դառնում Օստանկինոյի հեռուստակայանը, որով մեր երկրում հաղորդվում է համամիութենական առաջին ծրագիրը: Մոսկվայի համամիութենական հեռուստակենտրոնի աշտարակն ամենաբարձրն է աշխարհում (այն ունի 533 մետր բարձրություն): Կոնաձև հիմք ունեցող երկաթ-բետոնե աշտարակի 13 հարկերում են գտնվում տեխնիկական սենյակները, որտեղ տեղակայված են հեռուստատեսային և ռադիոհաղորդումների կայանները: Այցելուներն արագընթաց վերելակներով բարձրանում են. առաջին դիտահրապարակը 147 մետր բարձրության վրա է, երկրորդը՝ 269, որտեղից դեմդ է փռվում Մոսկվայի զմայլելի տեսարանը: Երրորդ կանգառը 337 մետր բարձրության վրա է: Այստեղից կարելի է մտնել ռեստորանի սրահները, որոնք զբաղեցնում են երեք հարկ: Ռեստորանի հա-



տակը պտտվում է (ժամում մեկ պտույտ) և հնարավորություն ընձեռում ավելի լավ տեսնելու Մոսկվան:

1967 թ. հոկտեմբերի 1-ից Մոսկվայում սկսվել են սիստեմատիկ հաղորդումները գունավոր հեռուստատեսության, որը դեռևս 1925 թ. հայտնագործել է ինժեներ Ադամյանը: 1969 թ. թողարկվել է մոտ 6000 հեռուստացույց: Սկսվում է «Ավրորա», «Բալթիկա», «Վոլխով» հեռուստացույցների արտադրությունը՝ նոր ձևավորմամբ: Նախատեսվում է «Գրանիտ» նոր մոդելի հեռուստացույցի թողարկումը: Կավելանա այնպիսի հանրահայտ բարձրորակ հեռուստացույցների արտադրությունը, ինչպես՝ «Օգոնյոկ», «Էլեկտրոն—2», «Ռուբին—106» և այլն: Զգալի չափով կավելանա «Ռուբին—401» և «Ռադուգա—5» գունավոր հեռուստացույցների թողարկումը:

Մեր հանրապետությունում բուռն թափով զարգանում է հեռուստատեսությունը— հաղորդումների բոլոր միջոցներից ամենատարածվածն ու սիրվածը: Երևանի հեռուստակենտրոնի կառուցումից հետո, որն առաջիններից է Սովետական Միությունում, 1957 թ. առաջին անգամ մեր մայրաքաղաքում վառվեցին երկնագույն էկրանները: Երևանի հեռուստակենտրոնն ուլտրակարճ ալիքների տարածման սպեցիֆիկայի ու տեղանքի լեռնային ռելիեֆի հետևանքով կարողանում է հեռուստահաղորդումներով ապահովել միայն քաղաքի մերձակա շրջանները (60 կմ շառավղով):

Հանրապետության այլ քաղաքներն ու շրջանները հեռուստատեսային ծրագրի, ինչպես նաև Երևանում կենտրոնական հեռուստատեսային ծրագրի հաղորդման համար 1965 թ. կառուցվեց և շահագործման հանձնվեց Ռուստավի—Երևան ռադիոռելեային գիծը, որը միացվեց Մոսկվա—Սիմֆերոպոլ—Սոչի—Թբիլիսի ռադիոռելեային գծերին: Դրա շնորհիվ հնարավոր դարձավ ութերորդ ալիքի միջոցով Երևանում սիստեմատիկաբար ընդունել կենտրոնական ծրագրի հաղորդումները: Ռադիոռելեային հակադարձ գիծը հնարավորություն ընձեռեց հանրապետության հեռուստատեսային ծրագիրը հաղորդելու Պուշկինյան և Սեմյոնովյան լեռնանցքներում, ուր տեղակայված են 7-րդ և 10-րդ ալիքներին համապատասխան հեռուստատեսային հզոր ռետրանսլյատորներ: Այդ երկու հաղորդիչները հեռուստահաղորդումներով ապահովեցին Սևանի ջրավազանը, Իջևանի, Հրազդանի, Կիրովականի, Ստեփանավանի և Կալինինոյի շրջանները: Սակայն հանրապետության լեռնային ռելիեֆի հետևանքով հնարավոր չեղավ հեռուստապատկեր ստանալ կայուն ընդունման գոտում գտնվող շատ վայրերում: Այդ նպատակով տեղակայվեցին փոքր կարողության ռետրանսլյատորներ: Այսպես՝ Սևանի, Կրասնոսելսկի, Շամշադինի, Ալավերդու շրջանների համար բարձրաբերձ լեռնագագաթներին, ուր հասնում է Սեմյոնովյան և Պուշկինյան ռետրանսլյատորների ուժեղ ազդանշանը, տեղակայվեցին այդ շրջանները և դրանց մերձակա բնակավայրերը (մինչև 20—25 կմ շառավղով) որակյալ հեռուստահաղորդումներով ապահովող հաղորդիչներ: ՍՍՀՄ-ում առաջին անգամ Նոյեմբերյանի և Դիլիջանի շրջաններում գործադրվեցին օղագծեր: Եվ, այնուամենայնիվ, լեռնային կածաններում կամ լեռների ստորոտում գտնվող որոշ շրջանների բնակավայրերի մի մասը դուրս մնաց հաղորդման գոտուց: Այդ տեղանքի բնակավայրերը, չնայած ավելի մոտ են ռետրանսլյատորներին, անդրադարձող ազդանշանների հետևանքով վատորակ հաղորդումներ են ընդունում: Այդպիսիք են՝ Ախթալան, Սանահինը, Վահագնը, Թումանյանը և Դեբեդի լեռնային կածանների շրջակայքում գտնվող այլ բնակավայրեր, Հոկտեմբերյանի շրջանում՝ Բախչալարը,

Ալավերդու շրջանում՝ Ծաղկաշատը, Աթանը, Կաճաճկուտը, Թեղուտը, Շամշադինի շրջանում՝ Մոսեսգյուղը, Չորաթանը, Ղըղին, Այգեձորը և այլն:

Ներկայումս հանրապետությունում տեղակայվել և գործում են չորս հզոր և 19 փոքր կարողության ռետրանսլյատորներ: 1970 թվականի վերջերին հանրապետությունում ռետրանսլյատորների թիվը կկրկնապատկվի: Նշված ռետրանսլյատորները հեռուստահաղորդումներով ապահովում են Հայաստանի տերիտորիայի 52 տոկոսը: Հեռուստատեսությունից օգտվում է բնակչության 81 տոկոսը: Սակայն, եթե քաղաքային բնակչության 92 տոկոսն է ընդգրկված հեռուստատեսային ցանցում, ապա գյուղական բնակչության՝ միայն 67 տոկոսը:

Այժմ հանրապետության բնակչությունն օգտագործում է ավելի քան 240 հազար հեռուստացույց: 1970 թ. այն կհասնի 300 հազարի: Բոլոր 23 ռետրանսլյատորները բարձր տեղանքում են, ցրված հանրապետության ողջ տերիտորիայում: Սեմյոնովյան և Պուշկինյան ռետրանսլյատորները տարվա մեջ 4—5 ամիս ձյունածածկ են, և խիստ ծանր պայմաններում հեռուստատեսության կապավորներն ապահովում են մեր հեռուստացանցի նորմալ աշխատանքը: Մինչդեռ հանրապետության պլանավորող օրգանները չեն ապահովում հիշյալ ռետրանսլյատորներն անհրաժեշտ մեխանիզմներով, բարձունքներ հաղթահարող ավտոմեքենաներով, բուլդոզերներով, ամենագնացներով: Այդ տեխնիկայի բացակայության պատճառով խիստ դժվարանում է ռետրանսլյատորների շահագործումը, հաճախ ժամանակին չեն կանխվում վթարները, վնասվածքները:

1969 թ. մայիսի 1-ի վիճակով Հայաստանի 34 շրջաններից 9-ում հնարավոր չէ հեռուստապատկեր ստանալ (Ազիզբեկով, Սիսիան, Մեղրի, Գորիս, Սպիտակ, Ամասիա, Ղուկասյան, Անի, Ղափան): Ապրիլ ամսի հաղորդումների որակի ստուգումից պարզվեց, որ հանրապետության որոշ շրջաններում (Դիլիջան, Կիրովական, Ալավերդի, Նոյեմբերյան և այլն), հաճախ նույնիսկ կայուն ընդունման վայրերում, հաղորդումները ցածրորակ են: Հեռուստահաղորդման շղթան սպասարկում են չորս կազմակերպություն, որոնք ենթարկվում են տարբեր գերատեսչությունների— հեռուստատեսության ստուդիան՝ ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կոմիտեին, ռադիոռելեային գիծը՝ Ռուստավի կաբելի և ռադիոռելեային մագիստրալների վարչությանը, հեռուստահաղորդիչ կայանները՝ կապի մինիստրությանը, հեռուստացանցը, որ տեղադրում է հեռուստացույցներն ու անտենաները, կենցաղ-սպասարկման մինիստրությանը: Այս տեղամասերից յուրաքանչյուրն իր աշխատանքում ունի յուրահատուկ թերություններ, որոնք, վերջին հաշվով, վատթարացնում են կենցաղային հեռուստացույցի ընդունման-հաղորդման որակը:

1969 թ. չորս ամիսների ընթացքում եղած տեխնիկական ընդհատումների վերլուծությունը ցույց տվեց, որ անորակ հաղորդումների հիմնական պատճառը հեռուստատեսության ռադիոռելեային գծերն ու կայաններն են:

Հեռուստադիտողները, փաստորեն, 1969 թ. չորս ամիսներին զանազան պատճառներով հաղորդումներ չեն դիտել 27 ժամ 48 րոպե և պատկերները կամ ձայնը աղավաղված են եղել՝ 118 ժամ 21 րոպե. դադարների և վատորակ հաղորդումների զգալի մասը հեռուստատեսության ստուդիայի թողտվության հետևանք է: Մեզ մոտ, հատկապես, անբավարար է արտաստուդիական հաղորդումների որակը:

Ընդունման որակի համար վճռական նշանակություն ունի հեռուստացույցների և, հատկապես, անտենաների ճիշտ տեղադրումը: Մեր ռելիեֆի ծանր պայմաններում անտենաների տեղակայման գործը գյուղական վայրերում շատ վատ է կազմակերպված: Ապրիլ ամսվա ստուգումը ցույց տվեց, որ Ուզունլար գյուղում 10 հեռուստացույցից միայն մեկն է տեխնիկապես ճիշտ տեղակայված: Ընդունող հեռուստացանցի ֆիլիալները շրջաններում անբավարար են զբաղվում հեռուստատեսային կետերի տեխնիկական պատշաճ տեղակայմամբ: Բնակիչներն են նախագծում, պատրաստում և տեղակայում անտենաները, որի հետևանքով գրեթե ամենուր օգտագործվում են վատ հարմարեցված, պրիմիտիվ անտենաներ: Հեռուստացույցների և անտենաների ճիշտ տեղակայման վերահսկման բացակայության հետևանքով հեռուստահաղորդումներն աղավաղվում են, և տեղում են հեռուստադիտողների արդարացի բողոքները:



Անբավարար է զարգանում և տեխնիկապես կատարելագործվում հանրապետության ռադիոռելեային ցանցը: Շատ դանդաղ է կառուցվում Երևան—Ղափան ռադիոռելեային գիծը, որը, բացի մեր շրջանները հեռուստատեսային հաղորդումներով ապահովելուց, Գորիսի շրջանում կմիացնի Բաքու—Նախիջևան ռադիոռելեային գծերը և Երևանն ու Բաքուն հնարավորություն կունենան սիստեմատիկաբար հեռուստատեսային ծրագրեր փոխանակելու: Հայկ. ՍՍՀ գյուղական շինարարության մինիստրությունը պետք է արագացնի այդ գծի կառուցումը, գործադրելով բոլոր միջոցները:

Հայաստանը մինչև օրս չի կարողանում կենտրոնական հեռուստացույցով հաղորդումներ կազմակերպել, քանի որ Ռուսթավի—Երևան ռադիոռելեային գծերի տեղամասում հին ապարատներ են տեղակայված: Գծերի վերակառուցման հարցը բազմիցս բարձրացվել է կապի մինիստրության առաջ, բայց դրա լուծումը դեռևս ձգձգվում է: Առանց Ռուսթավի—Երևան ռադիոռելեային գծի վերակառուցման Հայաստանը չի կարող գունավոր հեռուստատեսության կանոնավոր հաղորդումներ ընդունել Մոսկվայից:

Երևանում սկսվել են հեռուստակենտրոնի վերակառուցման ծավալուն աշխատանքները, որից հետո հնարավոր կլինի կազմակերպել գունավոր հեռուստատեսության հաղորդումները: Հեռուստակենտրոնում կկառուցվի 305 մետր բարձրություն ունեցող նոր աշտարակ:

Հայաստանի կապավորները մեծ անելիքներ ունեն հանրապետության ողջ տարածությունը կենտրոնական ու հեռուստատեսային երկրորդ ծրագրի և գունավոր հաղորդումներով ապահովելու գործում: Հեռուստականալների անբավարարության պատճառով այսօր Մոսկվայից հաղորդումներ են դիտում միայն Երևանում, Արարատյան դաշտավայրում և Կիրովականում: Շուտով կենտրոնական հեռուստատեսության ծրագիրը կդիտեն նաև լենինականցիները:

Հաշվի առնելով Հայաստանի լեռնային կլիման, մեծ քանակությամբ ռետրանսլյատորներ հանրապետությունում իրար մոտ են տեղակայված, այդ է պատճառը, որ եղած 12 հեռուստականալները գործադրվում են հանրապետության ծրագրի հաղորդման համար: Հետագա զարգացման պայմաններում կզգացվի անբավարարություն, որը կհանգեցնի կանալների կրկնության ու փոխադարձ խանգարումների: Ուստի, նպատակահարմար է Հայաստանի տերիտորիան կենտրոնական ծրագրի հաղորդումներով ապահովելու խնդիրը լուծել հեռուստացանցի կոսմիկական գծերի կառուցմամբ:

Հայաստանի ԿԿ Կենտկոմը 1969 թ. հուլիսին անդրադարձավ հանրապետության հեռուստատեսության զարգացման, այն հեռուստահաղորդումներով

ապահովելու, հաղորդումների որակը բարելավելու հարցերին։ Կենտկոմի բյուրոն խնդիր դրեց մինչև 1975 թ. հանրապետության բոլոր բնակելի վայրերն ապահովել հեռուստահաղորդումներով, իսկ քաղաքները՝ կենտրոնական ու գունավոր. 1970 թ. շահագործման հանձնել Ղուկասյան, Ամասիա ռադիոռելեային գիծը, Ապարանի, Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Սիսիանի, Գորիսի, Ղափանի շրջկենտրոնները և Ջերմուկն ընդգրկել հեռուստատեսային ցանցի մեջ։ Մինչև 1971 թ. Լենինականում տեղակայել հզոր հաղորդիչ, որն ապահովի կենտրոնական հեռուստատեսության հաղորդումների ընդունումը Շիրակի դաշտավայրում։

Հեռուստացանցում գոյություն ունեցող թերությունների վերացման գործում մեծ անելիքներ ունի կենցաղ-սպասարկման մինիստրությունը, անհրաժեշտ է հեռուստացանցի ֆիլիալներ բացել հանրապետության բոլոր քաղաքներում և շրջկենտրոններում, ապահովելով դրանք բարձրորակ կադրերով և անհրաժեշտ սարքավորումներով ու պահեստամասերով։

Հեռուստատեսությունը կոմունիստական կուսակցության հզոր զենքն է, ինֆորմացիայի, պրոպագանդայի և աշխատավորական մասսաների կոմունիստական դաստիարակության կարևորագույն միջոցը։ Ծրագրերի բարելավումը և հաղորդումների որակի բարձրացումն այդ ասպարեզի աշխատողների առաջնահերթ խնդիրն են։

Պարտավորվելով արժանավայել դիմավորել Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, հանրապետության կապավորները պատվով կկատարեն Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջադրանքները։



# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ԱՐԺԱՆԻ ԴՐՎԱՏՈՒՄ

Սերունդները երգեր կերգեն Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանի սովետական կնոջ մասին, կխոնարհվեն նրա հոգու մեծության ու վսեմության առաջ, նրա հոգու արիության, նրա տոկունության առաջ։

**«Правда»**, 1942 թ., 3 մարտի

Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին թիկունքում ու ռազմաճակատում սովետական կանայք իրենց հայրենանվեր գործերով ու աշխատանքային սխրագործություններով ետ չմնացին տղամարդկանցից։ Հայաստանի կանայք ևս տղամարդկանց հավասար, նրանց հետ կրեցին մարտական կյանքի բոլոր ծանրությունները, նրանց հետ մեկտեղ հասան Բեռլին։

Սովետահայ կնոջն է նվիրել իր Սովետական Հայաստանի կանայք Հայրենական մեծ պատերազմում գիրքը[1], ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի գիտաշխատող, պատմական գիտությունների թեկնածու Լիդա Մարտիրոսյանը։ Նա համոզիչ փաստերով ու ջերմ խոսքերով ընթերցողին պատմում է Սովետական Հայաստանի կանանց հերոսագործությունները թիկունքում — գործարաններում ու կոլտնտեսային դաշտերում, ռազմաճակատում։

Ազատության ու անկախության դարավոր գինվորն է հայ կինը։ Նա միշտ երազել է երջանիկ կյանքի մասին, տղամարդկանց հետ մահու և կենաց պայքար մղել օտարերկրյա զավթիչների դեմ։

Հիշելով Լենկթեմուրի արշավանքների ժամանակ թշնամու դեմ մարտնչած Կարինեին, աղատատենչ զեյթունցիների հետ պայքարած հերոսուհուն՝ Մարիամին, հեղինակը հպարտությամբ է նշում, որ Հոկտեմբերյան հեղափոխության մերկաշունչ օրերին պայքարի են ելել և հայ կանայք։ Սովետական իշխանության համար ակտիվ մարտնչել են Ձառո Կնունյանցը, Նինա Ալաջալովան, Թամարա Մելիք-Շահնազարյանը, Ջավահիր Տեր-Պետրոսյանը և ուրիշներ։ Անմոռանալի է Միխելսոնի գործարանի քաղաքական խմբակի ղեկավար, երիտասարդական «երրորդ ինտերնացիոնալի» հիմնադիր Լուսիկ Լիսինյանի հիշատակը, որը քաջաբար ընկավ Մոսկվայի բարիկադային մարտերից մեկում։

Հաղթեց Հոկտեմբերը՝ ազատություն բերելով նաև կնոջը։ Հարյուրավոր կանանց փոխարեն տնտեսական շինարարությանն սկսեցին մասնակցել միլիոնները, և բուռն թափով ծավալվեց սոցիալիստական շինարարությունը։

Սկսվեց Հայրենական մեծ պատերազմը։ Ընդհատվեց խաղաղ շինարարական աշխատանքը, անավարտ մնացին շատ գործեր, կանխագծումներ, անկատար՝ շատ երազանքներ, ցանկություններ... Ամեն ինչ ռազմաճակատի համար, հաղթանակի, հայրենիքի փրկության համար։

Այս անգամ ևս սովետական, ինչպես և հայ կինը ցույց տվեց իր բուռն հայրենասիրությունը։ Թիկունքում ամենուր փոխարինելով ամուսիններին, եղբայրներին ու որդիներին, ռազմաճակատում նրանց հետ ուս-ուսի մարտնչում էր նա, զինվորագրվում կոմունիստական կուսակցությանը, երդվելով տուն չդառնալ, սուրը պատյան չդնել, մինչև վերջին թշնամին դուրս չշպրտվի հայրենիքի սահմաններից։ Ահա թե ինչ է գրում կամավոր ռազմաճակատ մեկնած Լենա Գրիգորյանը. «Իմ հայրենիքը ծաղկուն Հայաստանն է։ Բայց իմ հայրենիքը ո՛չ միայն Հայաստանն է, այլև ամբողջ Սովետական Միությունը։ Ուզում եմ հազար կյանք ունենալ, որպեսզի բոլորը նվիրեմ Սովետական Միությանը»։

Պատերազմի առաջին օրերին ստեղծվեցին

[1] Լ. Վ. Մարտիրոսյան — Սովետական Հայաստանի կանայք Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—1945), ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1968, Երևան, 167 էջ։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՆԿՈԼՈԳԻԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆ

Ֆրանսիայի Լիոն քաղաքում սկսվել է միջազգային օնկոլոգիական կենտրոնի կառուցումը, որին մասնակցում են ինը երկրներ, այդ թվում և Սովետական Միությունը։ Տասնչորսհարկանի այդ վիթխարի շենքը կառուցվելու է երկու տարում։ Նորաստեղծ միջազգային կենտրոնը հատուկ ուշադրություն է նվիրելու այն բնագավառների ուսումնասիրման, որոնք մատչելի են միջազգային կազմակերպության աշխատակիցներին և պահանջում են մի քանի երկրների համատեղ ջանքերը։ Կենտրոնի կայուն անձնակազմը բաղկացած կլինի 250 մարդուց, որոնցից 150-ը՝ գիտնականներ։

Ներկայումս ուսումնասիրվում են մի քանի սննդամթերքների տոքսինների կանցերոգեն հատկությունները, վիտամինների դերը լեյկեմայի պաթոգենեզ;, աշխարհագրական պայմանների դերը՝ քաղցկեղային հիվանդությունների առաջացման ու զարգացման գործում։ Պլանավորված է սիստեմատիկաբար ուսումնասիրել քաղցկեղի բուժման մի քանի մեթոդներ՝ հատկապես՝ քիմիոթերապիան։

## ԱՎՏՈՄԱՏ՝ ՀՈՐԱՏՈՂՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հետախուզության մեթոդիկայի ու տեխնիկայի համամիութենական ինստիտուտն ստեղծել է հորատող սյունն իջեցնող ու բարձրացնող ավտոմատ, որն օգտագործվում է հորատման պրոցեսում, վերհան մեքենայով սյան անընդհատ իջեցման ու բարձրացման, մինչև 7 կիլոմետր խորությամբ հորատանցք փորելու համար։ Ավտոմատն ունի սյունաշարի փակ միացումների տեղը որոշող սարք։ Վերհան մեխանիզմն ունի արագության ու ընթացքը կարգավորող հարմարանք։

Ավտոմատ կառուցվածքը բավականին պարզ է և տնտեսապես շահավետ։ Այն պատենտավորվում է տասնյակ երկրների կողմից։

## ԲԺՇԿԱԿԱՆ ՆՈՐ ՍԱՐՔ

Լվովի ռադիոէլեկտրոնային բժշկական ապարատուրայի գործարանում սկսվել է էլեկտրաիմպուլսային դեֆիբրիլյատորների՝ սրտի ռիթմի խախտումը կանխող սարքի թողարկումը։ Այն համեմատաբար թեթև է, կարելի է օգտագործել ո՛չ միայն կլինիկայում, հիվանդանոցում, այլև «Շտապ օգնության» աշխատանքներում։ Այդ սարքը բոլոր տեսակի էլեկտրաիմպուլսային բուժումներն ապահովող էլեկտրոդների և էլեկտրապահպանիչների մի հավաքածու է։

## ԿԱՅԾԸ՝ ՀԱՏԻՉ

Էլեկտրաէրոզիոնային հաստոցների շարքում իր արժանի տեղն է գրավում Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանի թողարկած 453 П մոդելը։ Այն փոխարինում է սովորական մի քանի մետաղահատ հաստոցների։

Պերֆոժապավենի վրա կոդավորված ծրագրով դազգահը լարային էլեկտրոդով հատում է ամուր ձուլվածքի բարդ եզրագծեր ունեցող արտադրանքը և հոսանքատար այլ նյութեր, որոնց մշակումն այլ եղանակով շատ դժվար կամ գրեթե անհնար է։

## ՏՐԱԿՏՈՐ ԱՅԳԵԳՈՐԾՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Մոլդավիայում խաղողի և պտղատու այգիները տարածված են հիմնականում բլուրներում ու սարալանջերում, ուր պիտանի չէ դաշտում աշխատող տրակտորը։ Մոլդավիայի մասնագետներն ստեղծել են մի մեքենա, որը հաջողությամբ օգտագործվում է խաղողի և պտղատու այգիներում։ T54—B մակնիշի տրակտորը ազատ շարժվում է տնկարկների լաբիրինթոսում, հեշտությամբ հաղթահարում ուղած անհարթ ճանապարհը, սուր թեքությունները։ Դրան կցված սարքավորման օգնությամբ տրակտորիստը կարող է վարել, փխրեցնել և բուկլից կատարել։ Կատարվելիք աշխատանքի համապատասխան տրակտորը կարող է ընթանալ մեկից մինչև 16 կիլոմետր արագությամբ։ Նոր տրակտորը պատշաճ ընդունելություն է գտել ո՛չ միայն Մոլդավիայում, այլև մեր երկրի մյուս հանրապետություններում։